

ՍՍՀՄ Գերագույն սովետի յոթերորդ արտահերթ նստաշրջանի պատգամավորների առջև ելույթ է ունենում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ, սահմանադրական հանձնաժողովի նախագահ ընկեր Լեոնիդ Իլյիչ ԲՐԵԺՆԵՎԸ։

# ՄԵՐ ԿՅԱՆՔԻ ՀԻՄՆԱԿԱՆ ՕՐԵՆՔԸ

Չորս ամիս տևեց ՍՍՀՄ նոր սահմանադրության նախագծի համաժողովրդական քննարկումը: Հոկտեմբերի սկզբին, մի քանի օր շարունակ ՍՍՀՄ Գերագույն սովետը Մոսկվայում այդ քննարկման արդյունքներն էր ամփոփում, ուղղումներ ու լրացումներ էր անում, որոնք առաջարկել էին մեր երկրի աշխատավորները: Ելույթ ունենալով ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանում, Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը ասաց, որ սահմանադրության քննարկմանը մասնակցել են ավելի քան հարյուր քառասուն հազար մարդ, այսինքն Սովետական Միության համուն բնակչության չորս հինգերորդ մասը:

1918 թվականին Մոսկվայի աշխատավորության միտինգում Վլադիմիր Իլյիչ Լենինը իր «Աշխատավոր ժողովրդին ի՞նչ է տալու սովետական սահմանադրությունը» ելույթում ասաց, որ այն արտացոլում է ամբողջ աշխարհի պրոլետարիատի իդեալները: Լենինյան այդ խոսքերը վերաբերում են նաև նոր սահմանադրությանը, որը մեր երկիրը ընդունեց իր 60-ամյակի նախօրյակին:

Նոր սահմանադրությունը մեր ժամանակի կոմունիստական մանիֆեստն է, որի մեջ ընդհանրացված է աշխարհում կոմունիզմ կառուցող առաջին երկրի փորձը: Նոր սահմանադրությունը հիմն է սովետական ազատ մարդու, հիմն է մեր սովետական, սոցիալիստական ապրելակերպի, հիմն է մեր ժողովուրդների անխախտ բարեկամության: Սահմանադրության մեջ, ինչպես հայելում, արտացոլվել է ամենաբարձրն ու ամենասրբազանը, որի համար պայքարել և իրենց կյանքն են զոհաբերել և՛ Ձմեռային պալատը գրոհող մարտիկներն ու բանվորները, և՛ քաղաքացիական կռիվների լեգենդային հերոսները, և՛ Մոսկվայի տակ կենաց ու մահու կանգնած աշխարհազորը, և զինվորները՝ որոնք գլխովին ջախջախեցին ֆաշիզմը:

Իր ելույթում Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը ասաց.

— Համաժողովրդական քննարկման գլխավոր քաղաքական արդյունքը կայանում է նրանում, որ սովետական մարդիկ ասացին՝ այո, դա այն Հիմնական օրենքն է, որին մենք սպասում էինք: Այն ճիշտ է արտացոլում մեր նվաճումները, մեր հույսերըն ու ակնկալիքները, ճիշտ է բացահայտում մեր իրավունքներն ու պարտականությունները:


Բոգդան Կնունյանց


Լյուդվիգ Կնունյանց


Փառանձեմ Կնունյանց-Ռիգել


Տիգրան Կնունյանց (Գնունի)

# ԿՆՈՒՆՅԱՆՑՆԵՐԻ ընտանիքը

«Դուք ուզում եք դատել մի հեղափոխականի, երբ դրսում հեղափոխություն է: Դուք ուզում եք պաշտպանել այն հասարակարգը, որին պատմությունը մահվան է դատապարտել: Դատե՛ք, պարոնա՛յք դատավորներ, իսկ մեզ, ձեզ հետ միասին, կդատի հեղափոխությունը»,— այս խոսքերով ավարտեց ականավոր հեղափոխական, Լենինի հավատարիմ զինակից Բոգդան Կնունյանցը իր իսկ դատավարության ժամանակ արտասանած բոցաշունչ ճառը:

Վ. Ի. Լենինը այն անվանեց «Դատ՝ դատի դեմ» և խորհուրդ տվեց բոլոր բոլշևիկներին անպայման ծանոթանալ դատարանում Կնունյանցի ելույթի բովանդակությանը:

Ղարաբաղի Ջամիաթ գյուղում է ծնվել Բոգդանը: Սոնա և Միրզաջան Կնունյանցներն ունեցել են տասնմեկ երեխա, որոնցից 6-ը զանազան պատճառներով մահացել են մանուկ հասակում, իսկ մնացած հինգը՝ Տարասը, Լյուդվիգը, Բոգդանը Տիգրանը և Փառանձեմը, մեծանալով դարձան պրոֆեսիոնալ հեղափոխականներ, իրենց կյանքը անմնացորդ նվիրեցին հեղափոխության մեծ գործին:

Լյուդվիգ և Բոգդան Կնունյանցները իրենց հեղափոխական գործունեությունը սկսել են դեռ Պետերբուրգում ուսանելու առաջին իսկ ամիսներից: Ուսանողների առաջին խոշոր ելույթը տեղի ունեցավ 1897 թվականի մարտի 4-ին, այն բանից հետո, երբ կանանց բարձրագույն դասընթացների ուսանողուհի Մարիա Վետրովային ցարական բանտում տանջամահ արին. Նրա վրա նավթ էին լցրել և այրել: Պետերբուրգի Կազանսկի տաճարի հրապարակն էին հավաքվել մի քանի հազար ուսանողներ: Նրանց մեջ էին և Կնունյանց եղբայրները: Ցուցարարներին ցրելիս ոստիկանությունը ձերբակալում է Բոգդանին: Դա նրա առաջին կալանքն էր: Ազատ արձակվելուց հետո նա հեռացվում է ինստիտուտից, մի քանի տարի անց, մեծ ջանքերով վերականգնվում է:

1901 թվականին Բոգդանը գալով Բաքու ընտրվում է ՌՍԴ(բ)Կ Բաքվի կոմիտեի անդամ: Այնտեղ էր և նրա կրտսեր եղբայրը՝ Տիգրանը (Գնունին): Վերջինս էլ պատրաստում է նորաստեղծ կոմիտեի կնիքը, որի վրա գրված էր. «Պրոլետարներ բոլոր երկրների, միացեք», «ՌՍԴ(բ)Կ Բաքվի կոմիտե»:

1902 թվականի մայիսյան ցույցերից հետո ձերբակալվում են Բաքվի կոմիտեի անդամներից շատերը, որոնց թվում նաև Կնունյանցների ողջ ընտանիքը՝ Լյուդվիգն ու Բոգդանը, իրենց կանանց հետ, Տիգրանը, Փառանձեմը: Սակայն բանվորական հուզումներից վախենալով, ոստիկանությունը շուտով նրանց ազատ է արձակում: Հետագայում Բոգդան Կնունյանցը ընտրվում է ՌՍԴ(բ)Կ Պետերբուրգի կոմիտեի անդամ և մասնակցում է կուսակցության II համագումարին, III համագումարի համար նախապատրաստական աշխատանքներ տանում Կովկասում, ընտրվում է II Ինտերնացիոնալի Շտուտգարտի կոնգրեսի, ապա ՌՍԴ(բ)Կ IV՝ Հելսինկֆորսի (Հելսինկիի) պատգամավոր: Համագումարներում և ելույթներում հանդես է գալիս Ռուբեն, Ռադին, Ռուսով և այլ ծածկանուններով: Բոգդան Կնունյանցը վախճանվեց ցարական աքսորավայրում 1911 թվականի մայիսի 14-ին, 33 տարեկան հասակում:

Անձնուն հեղափոխականի ողբերգական վախճանը չէր կարող չազդել այն տարիների երիտասարդների մտքի ու սրտի վրա և նրանց չդարձնել հեղափոխական գաղափարների հետևորդներ, արդար կյանքի համար պայքարի նվիրված մարտիկներ: Պայքարը շարունակեցին նաև Կնունյանցների հեղափոխական ընտանիքի մյուս անդամները:

Հեղափոխությունը հաղթանակեց: Երեկվա հեղափոխականները դարձան նոր կյանքի առաջին ստեղծողները: Լյուդվիգ Կնունյանցը, որին, ի տարբերություն Բոգդանի, հաջողվել էր ավարտել քիմիական ֆակուլտետը, տարիներ շարունակ ղեկավարեց Գրոզնու նավթարդյունաբերությունը: Հոր ճանապարհով գնաց նաև Լյուդվիգի որդին՝ Իվան Կնունյանցը, որն այժմ խոշոր, ճանաչված գիտնական է, ակադեմիկոս, սոցիալիստական աշխատանքի հերոս, մեկ լենինյան և երեք պետական մրցանակների դափնեկիր: Մինչև օրս Մոսկվայում ապրում է և Կնունյանցների միակ քույրը՝ պրոֆեսիոնալ հեղափոխական, 1903 թվականից կուսակցության անդամ, երեք հեղափոխությունների ակտիվ մասնակից Փառանձեմ Կնունյանց-Ռիգելը: Անցյալ տարի, ծննդյան 90-ամյակի առթիվ նա պարգևատրվեց Լենինի շքանշանով:

Հեղափոխական Կնունյանցները սկսեցին պայքարը հանուն լուսավոր գալիքի, իսկ այսօր նրանց հետնորդները իրականացնում են իրենց նախնիների երազանքները:

*ՀՈՎՀԱՆՆԵՍ ՔԵՐՈԲՅԱՆ*
*պատմաբան-միջազգայնագետ*

# ԶՐՈՒՅՑ ԱՐԶՆՈՒ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԵՏ

*ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ*

Պարիսպը, որի կատարներով առաջ էինք գնում, մի տեղ ընդհատվել է և թամբի ձև ընդունել, որի երկու կողմերում, դեմ-դիմաց մի-մի ժայռ էին կանգնած միջնադարյան ամրոցի բուրգերի նման:

— Այս թամբով են դոլոններն իջնում ջրի, քեռի՛,— ցույց տվին ինձ:

Հետաքրքրությամբ ցած եմ նայում. այս ի՞նչ բան է, թմբի պռնկից մինչև գետը երկու շարք քարեր են շարված:

— Հասկացա՞ր, քեռի՛,— հարցրեց Բեղվինը (մրտքումս այդպես կնքեցի ես նրան)՝ ճերմակ ատամները թուխ դեմքին փայլեցնելով:

Մտածում եմ ու դանդաղ «վերլուծում» տեսարանը: Այո՛, վատ հնարք չի: Դոլոնը վգույշ թռչուն է, նա միանգամից թռիչքով չի հասնի ջրին: Օդում կնկատեն, կհետևեն, թե ո՛ւր գնաց, ո՛ւր իջավ: Ջրից հեռու պիտի իջնի, չորս կողմը հետապոտի և աշխատի աննկատելի մոտենալ ջրին: Դե որ այս ամբողջ տարածությունը պարսպապատ է, մտածում է, լավ է իջնենք այս փոսում, չար աչքից հեռու և ոտքով գաղտագողի ցած գնանք:

Երեխաները հաստատեցին իմ ենթադրությունը, իսկ Բեղվինը նույնիսկ կարմացավ.

— Քեռի՛, էդ բանը դու ո՞նց գլխի ընկար, ախր քաղաքում ես ապրում...

— Մի կերպ գլխի ընկա, էլի՛,— ծիծաղեցի ես,— բայց մի բան գլխի չեմ. ինչո՞ւ եք ցանկապատեր քաշել մինչև ձորը:

— Որ լավ մտածես, այդ էլ գլխի կընկնես...—հանդուգն Բեղվինը աչքով արեց իրենից փոքրերին:

— Կածան եք սարքել, որ դոլոններն այդ կածանով իջնեն ջրի, դա հասկացա՞նք... Բա էն թվաչափ պատն ի՞նչ արգելք կարող է լինել թևավորի համար...

— Իսկ դու չե՞ս տեսնում, որ մեր սարքած կածանի վրա ոչ մի քար չկա... Մաքո՛ւր, ոնց որ մայթ... Դե դա՛ էլ հասկացիր: Որ դա հասկանաս, պարզ կլինի, թե ինչի համար են պատերը:

Այստեղ արդեն երեխաները ինձ կապ գցեցին: Նմկմացի, ուղեղս լարեցի և ենթադրում եմ, որ դրանով մեծ բավականություն պատճառեցի նրանց: Հեգնանքով, խորամանկությամբ և ծիծաղով լի նրանց աչուկներն ասում էին. «Գուցե և պրոֆեսոր ես, բայց այդ հասարակ բանը չգիտես: Իսկ մենք գիտե՞նք...»

Այդպես, իմ նեղ վիճակի վրա լուռ կվարճանալուց հետո, Բեղվինը խիստ տոնով դիմեց ինձ.

— Բա չես տեսե՞լ, որ դոլոնը քարի պատահելիս, վրայով չի ցատկում:

— Չի ցատկո՞ւմ: Բա ի՞նչ է անում, տեղում կա՞նգ է առնում,— կարմացա ես:

— Կանգ չի առնում, թեքվում է, կողքով առաջ գնում... Շրջանցում է:

— Հետաքրքիր է... Ես այդ բանը չգիտեի...

— Քաղաքում մեծացած մարդը այդ բանը ո՞նց կարող է իմանալ,— նետեց խոսակիցս: Իսկ այն մեղմ ու կապուտաչյա տղան, ընկերոջ համարձակությունից նեղվելով, գլուխը կախեց:

— Ո՞նց ես խոսում,— փնթփնթաց նա:

— Ի՞նչ է, ճիշտ չե՞մ ասում...

Իսկ ես, որ ինձ բնության գործերին գիտակ մարդ եմ համարում, փորձում եմ արդարանալ.

— Մեղքս ի՞նչ թաքցնեմ, չեմ տեսել... Դե ես դրանց միշտ հանդիպել եմ հարթ տափաստաններում, ուր քար չկա՝ Ծաղարակից արևելք, Հոկտեմբերյանի աղուտներում: Իսկ անցյալներում շատ կային նույնիսկ Երևանի մոտ՝ Նորքի վերևի հարթությունում...

— Հիմի հասկացա՞ր...

— Հա, հիմի գլխի եմ, թե ինչի համար են կուգահեռ ցած իջնող պատերը: Եթե այդ թռչունը կաքավի նման քարից քար չի թռչում, ուրեմն պատերի միջև սեղմված կածանով ուղիղ պիտի իջնի գետափ... Է՛, դրանից ձեզ ի՞նչ օգուտ, որ այսքան չարչարվել՝ պատեր եք շարել,— հարցրի ես:

— Օգուտն այն է, որ ջրի ճամփին մեր թակարդներն են...

— Հա՜...

— Ջա՞ն, քեռի՛ ջան... Գնա՞նք ցույց տանք...

Երեխաները ճռվողելով ցած են վազում, իսկ ես դանդաղ իջնում եմ նրանց՝ ետևից: Լեռան լանջին կածանը տեղ-տեղ ընդհատվում էր փոքրիկ փոսով, որի վրա կույգ տախտակի կտորներն այնպես էին հարմարեցված, որ մի փոքր ծանրությունից բացվում էին դեպի ցած, դրանց վրա կանգնողը վայրկենապես գլորվում էր փոսը: Տախտակներն այնուհետև նախկին դիրքն էին ընդունում: Այդպիսի թակարդներ հնում ես տեսել էի Դարալագյազի հանդերում: Երբ կածանի մեջտեղը հարդ տեսա փռած, հասկացա, որ թակարդ է, բայց հիմա դատարկ, քանի որ թռչունները քուջուջ չէին արել հարդի վրա և չէին փնտրել նրա միջի հատիկները:

Այդպիսի թակարդները ես լոք էի տալիս անցնում, որից իմ պատանի ուղեկիցները հասկացան, որ դրանք անծանոթ բաներ չեն ինձ համար: Համենայն դեպս, ինձ փորձելու նպատակով անտարբեր անցան այնպիսի մի փոսի վրայով, որ իմ հաշվով մեջը արդեն բըռ-

նած գերի ուներ: Կանգ առա այդ փոսի մոտ, երեխաներին ետ կանչեցի:

— Ինչո՞ւ սա չեք ստուգում,— հարցրի ես:

— Ի՞նչ ստուգենք, չես տեսնո՞ւմ, որ դատարկ է...

Եվ Բեդվինը գաղտնի աչքով արեց ընկերներին:

— Իսկ եթե մեջը բան լինի, ի՞նձ կտաք:

Խորամանկորեն իրար երես են նայում ու ժպտում:

— Իսկ ինչի՞ց հասկացար, որ փոսը դատարկ չի, քեռի՛:

— Տախտակները տկլոր են: Պարզ չի՞ որ, հարդը դղոնների հետ ցած է թափվել:

— Դե որ այդքանը գլխի ընկար, ուրեմն իսկական որսորդ ես: Ա՛ռ մրցանակդ...

դիտել են ձորի վրա սավառնող անգղի ճախրանքը, ներկա են եղել բազեի հափշտակիչ արարքներին, արտերից կարմիր կակաչներ են քաղել ու ժայռերի ծերպերում բուսած վայրի ծաղիկներ...

Երևի այդ է պատճառը, որ հիմա հետաքրքրությունից բացի, հեգնանք եմ նշմարում նրանց հայացքների մեջ, որ նշանակում է. «Ի՞նչ պիտի ասես, որ մենք չիմանանք...»

— Իհարկե, լավ գիտեք, թե այս թռչունն ինչու այս գույնն ունի,— սկսեցի ես:— Դե սա իր ապրած միջավայրի՝ անապատի ու գորշ դոերի գույնը պիտի ունենա, դա գրքերից էլ իմացած կլինեք...



Այս ասելով, Բեդվինը ձեռքը զույգ տախտակների արանքով խոթեց փոսը, ներսում ինչ-որ բան արեց: Այդ պահին նրա թուխ դեմքը փայլում էր ներքին հրճվանքից ու աչք-ունքով հասկացնում էր ընկերներին, թե որսն արդեն իր ձեռքի մեջ է:

— Համեցե՛ք, քեռի՛,— ասաց տղան և թպրտացող դղոնը մեկնեց ինձ:

Չիլ կաքավի մեծության, աղավնու գլխով, դեղնագորշ գույնի մի թռչուն էր դա, որ ահով նայում էր մեզ ու ձեռքիցս դուրս պրծնելու փորձեր էր անում:

— Դե՛հ, նստեցե՛ք քարերին, տղաներ, հիմա էլ ես եմ ձեզ հարցաքննելու: Հիմա մենք պիտի քննենք այս թռչունի գույնը, մարմնի կազմությունը և աշխատենք դրանից հասկանալ նրա ապրելակերպը:

Երեխաները նստոտել են լանջի քարերին և հետաքրքրությամբ սպասում են, թե ինչ կասեմ: Ի՞նչ պիտի ասեմ, որ չիմանան նրանք՝ բնության այդ զավակները, որ դեռ երեխա հասակից թփերից կախկըլվելով տոտիկ-տոտիկ ժայռերն են բարձրացել, տեսել են դրանց վայրի բնակիչներին ու լսել նրանց ձայնը,

— Ինչո՞ւ գրքերից,— խոսքս կտրեց ամենից փոքրը և իր համարձակության համար խիստ կարմրեց,— մի օր կածանով ջրի էին իջնում, իսկ ես թփի միջից թաքուն նայում էի: Հանկարծ կորան: Զարմացա, ո՛չ թռան, ո՛չ էլ... Ախր էն քարերի մոտ էին... քիչ հետո ասածս քարերը ոտ առան ու վազեցին դեպի գետը...

— Ուրե՞մն...

— Ուրեմն՝ որ չեն շարժվում, չեն երևում...

— Քանի որ քարի գույնի են,— լրացրեց փոքրիկի ընկերը, որ մինչ այդ ոչ մի բառ չէր արտասանել:

Քեֆս եկավ: Մի տես է՛, բոյները երկու թզաչափ է, բայց ինչքա՞ն բան գիտեն բնության մասին: Իմ ընկերոջ թոռը, որ սրանց հասակին էր, մեր գյուղում մի էշ տեսավ ու հրճվանքով բացականչեց. «Պապի՛, կո՛վը, կո՛վը, տե՞ս...»

— Իսկ կարո՞ղ եք ինձ ասել, սա աքլո՞ր է, թե՞ մարի:

Դժվարության մեջ ընկան:

— Ի՞նչ իմանանք, ինչքան տեսել ենք, ոչ մեկն էլ կատար չունի,— չփոթվեց կապուտաչյան:

— Կատար չունի, բայց ունի ահա այս նշանը... տեսնո՞ւմ եք...

Ու ցույց տվի քուչի վրայի սև գոտին:

— Հետո, մարիից խոշոր է և ընդհանուր գույնն էլ ավելի մուգ է, իսկ փետուրներն ավելի խայտաբղետ*են: Մարին բաց գույնի է: Հիմա նայեցեք սրա ոտքերի՛ն, տեսնո՞ւմ եք, որ փրչոտ են, կոշտ ու կոպիտ, դրա համար էլ մի կենդանաբան սրա անունը դրել է գավանաթաթ: Ինչո՞ւ այս գեղեցիկ ու քնքուշ թռչունը «գավանաթաթ» է: Մտածենք գտնենք, որովհետև այդ հարցի պատասխանը չկա ոչ մի գրքում...

Մտածեցինք բոլորս էլ, մտքերի փոխանակություն կատարեցինք և եկանք այն եզրակացության, որ թաթերի կազմությունը նույնպես կապ ունի իր ապրած միջավայրի հետ. քայլում է հաճախ կեծացած ավազների ու կոշտ խճի վրայով, ուրեմն թաթերը պիտի լինեն փրչոտ ու կոպիտ:

— Բայց այդ թողնենք, ես ուզում եմ պարզենք հետևյալ հարցը, որը նույնպես ոչ մի գրքում չկա. ինչո՞ւ այս թռչունը քարերի վրայով չի ցատկում, չէ՞ որ ձեր որսի եղանակը բխում է դրլոնի հենց ա՛յդ բնավորությունից:

— Դա մեր պապերի եղանակն է, մերը չի,— համեստորեն ուղղեց կապուտաչյան:— Հայրս ասում է, որ հին-հին դարերից սկսած՝ մեր գյուղացիք այդ ձևով են դրլոն որսում: Պապենական փորձ է, է՛, կատակ բան չի,— պարծեցավ նա վերջում և գլուխը թաքցրեց [illegible] ձեռնը:

— Գուցե ոչ թե դարեր, այլ՝ հազարամյակներ,— համաձայնեցի ես:— Դե՛հ, շարժեցե՛ք ուղեղներդ:

— Ոտքերը ցո՛ւյց տուր, հետո ուղեղներս շարժենք,— կարգադրելու նման ասաց հանդուգն Բեդվինը:

Մեկ-մեկ տնտղեցին դողացող ոտքերը ու լռեցին:

— Այս ոտքերով, իհարկե, նա կծուլանա ցատկել: Կարճ են, թույլ, չզարգացած:

Գլխով հավանության նշաններ ստացա:

— Եփելուց առաջ որ փետրում եք, նկատե՞լ եք, որ ազդրերը ճերմակ են, իսկ ամբողջ մարմինը՝ մուգ գույնի:

— Ճիշտ է, կարճլիկ բդերին կարծես կավիճ քսած լինեն:

— Ի՞նչ եք կարծում, ինչի՞ց է այդպես:

Նեղն ընկան, կմկմացին, և հանկարծ այն փոքրիկը վեր թռավ տեղից ու մատ բարձրացրեց, կարծես դասարանում լիներ:

— Կարո՞ղ է քիչ ման գալուց լինել:

— Ապրե՛ս, կարող է: Հինգ ու խաչ... Քիչ է քայլում, դրանից էլ ոտքերը ճերմակ են ու չզարգացած: Իսկ ինչո՞ւ է քիչ քայլում...

— Որովհետև շատ է թռչում,— իր գյուտի վրա խիստ ուրախացավ կապուտաչյան:— Մենք դրանց շարունակ օդում ենք տեսնում «ճո՜ւռ, ճո՜ւհ, ճո՜ւռ»— կանչելով անընդհատ թռչում են, հա՛ սպասիր, թե պիտի իջնեն: Իսկ կաքավները հարյուր քայլ չթռած, իջնում են:

— Այո՛, ահա քո մտքի՛ հաստատումը:

Այս ասելով, ես բացեցի թռչունի մի թևը և ցույց տվի. երկար էր ու սուր: Մեկ-մեկ շոշափել տվի կուրծքը, որ պարգացած էր ու մկանուտ, նշան այն բանի, որ թևերը շատ են աշխատում:

— Հասկացա՞ք, երեխանե՛ր, թե ինչպես կենդանու մի օրգանի գործունեությունը կապված է մյուս օրգանների հետ: Այս դեպքում, օրինակ, թևերը երկար են, դրանից էլ ոտքերը կարճ են: Ոտքերը կարճ են, դրանից էլ թևերը երկար են: Նույն կերպ համագործակցության մեջ են նաև մարմնի մյուս մասերը... Դեհ, այսօր այսքանը բավական է: Այժմ եկեք, ի նշանավորումն մեր ծանոթության, ազատություն տանք այս թռչունին:

Բեդվինը հոնքերը խոժոռեց ու փնթփնթաց. «Հավիվ ենք բռնել...», իսկ մյուսները ձևացրին, թե չեն նկատում նրա դժգոհությունը: Վեր նետեցի գերի թռչունին և նկատեցի, որ ով բարի է, նրա սիրտը թեթևացավ:

Նայում էինք դրլոնի նետասլաց թռիչքին ու հրճվում:

— Ճո՛ւռ, ճո՛ւռ, ճո՛ւռ,— տագնապահար կանչում էր նա ջինջ լազուրում՝ իր կորած հարազատներին էր փնտրում...

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ









# ՀԱՅԵՐԸ ԵՎ ՄԻՋՆԱԴԱՐՅԱՆ ԿԱԶԱՆԸ

Աեհիր անցյալը վկա է եղել հայերի ու ռուսների վաղեմի կապերին ու բարեկամությանը: Հայ պատմիչները ուշագրավ տեղեկություններ են թողել ոչ միայն ռուսների, այլև սլավոն ժողովուրդների ու նրանց նախորդների մասին: Մեզանից ավելի քան 1000 տարի առաջ հայկական գաղթավայրեր են ստեղծվել Դոնի, Դնեպրի, Վոլգայի ափերին՝ Աստրախանից ու Կազանից մինչև Կիև ու Կամենեց-Պոդոլսկ և Մոսկվա: Բավական մեծ հայկական գաղութ է եղել սլավոնական մեծ Բուլգար քաղաքում (X—XIV դ.), որտեղ կատարված պեղումները ի հայտ են բերել հայատառ արձանագրություններով տապանաքարեր, հայկական եկեղեցի և նյութական կուլտուրայի այլ հուշարձաններ: Հայերը բնակություն են հաստատել նաև բուլղարների կողմից XIII դ. կեսերին հիմնած Կազան քաղաքում, որն ընկավ թաթար-մոնղոլական խաների տիրապետության տակ: Հետաքրքիր է այն փաստը, որ Մամայ խանի Մոսկվայի վրա հարձակվելու լուրը Դմիտրի Դոնսկոյին հաղորդել է Սիմեոն Մելիքովը: Նա և Անդրեյ Սարկիզովը հիշատակվում են Կուլիկովյան ճակատամարտում զոհված ռուսների անունների շարքում:

Ուշադրության արժանի է նաև այն, որ Աստրախանի ու Կազանի վրայով հայերը նավարկում էին ու հասնում Նիժնի Նովգորոդ, Մոսկվա և Մեծ Նովգորոդ: Տարեգրությունը վկայություն է պահպանել այն մասին, որ դեռևս 1390 թ. հայեր են ապրել Մոսկվայում, և որ այդ տարվա հուլիսին բռնկված մեծ հրդեհը սկսվել է հայազգի Աբրահամի տնից:

Մոսկովյան պետության ընդլայնումը և 1480 թ. թաթարական լծի թոթափումը նախապայմաններ ստեղծեցին Կազանի ազատագրման և Ռուսաստանին միացնելու համար: XVI դարում, հատկապես Գիրեյ խաների օրոք (1521—52 թթ.) Կազանի խանության բնակչության, ինչպես և Կազանի վրայով կատարվող առևտրի և հայ ու այլազգի առևտրականների, նրանց սպասարկող գործակատարների, արհեստավորների, քարավանների ծառայողների համար ստեղծվել էին ծանր ու անտանելի պայմաններ: Մոսկովյան մեծ իշխանները, որոնք արդեն «համայն Ռուսիայի ցար» տիտղոսն էին կրում, ձգտում էին միավորելու ռուսական հողերը և կանխելու թաթարական արշավանքների մշտական վտանգը: Այդ նպատակով, 1545, 1547—1548 և 1549—50 թթ. կազմակերպված անհաջող արշավանքներից հետո, Իվան IV ցարի հրամանով Կազանի մատույցներում 1551 թ. Վոլգայի վտակ Սվիյագի վրա կառուցվում է Սվիյաժսկ ամրոցը, այնտեղ կենտրոնացնելով կորք: 1552 թ. հունիսին ռուսական 150 հազարանոց բանակը հարձակման անցավ և օգոստոսի 30-ին շրջապատեց Կազան բերդաքաղաքը:

Ինչպես հաղորդում է դեպքերի ժամանակից ու տարեգիր՝ Կազանի պատմության անունն անհայտ հեղինակը (որը 20 տարի ապրել է Կազանում՝ գերության մեջ և շարադրել իր տեսած ու լսած հավաստի տեղեկությունները), Կազանի պաշտպանության թաթար ղեկավարները հայ հրետանավորներին կապում են թնդանոթներին և ստիպում ռմբակոծել ռուսների դիրքերը: Բայց հայերը նշանառումը կատարում են այնպես, որ արկերը չհասնեն ռուսներին, կամ նրանց վրայով հեռու թռչեն ու վնաս չպատճառեն նրանց:

Համառ մարտերն ավարտին են մոտենում: 1555 թ. սեպտեմբերին գործի են դրվում մարտական աշտարակներ, թնդանոթներ, ձեռնարկում են պայթեցումներ և հոկտեմբերի 2-ին վերջնական գրոհով Կազանը վերցվում է: «Կազանի տարեգիրը» հաղորդում է, որ Կազանից հաղթանակով վերադարձող Իվան IV-ին և նրա կորքին Մոսկվայում դիմավորում են բազմահազար ռուսներ և նրանց հետ նաև հայեր, որոնց ցարը ինչ-որ շնորհներ է անում: Ի պատիվ Կազանի գրավման 1555—1560 թթ. Կարմիր հրապարակի վրա կառուցված «Պոկրովսկի սոբորի» (որը հետո անվանվում էր «Վասիլի Երանելու տաճար») 9 գմբեթ-եկեղեցիներից մեկը կառուցված էր որպես հայկական, կամ Գրիգոր Լուսավորչի եկեղեցի: Այս փաստը, հավանաբար, խորհրդանշելու էր ռուսական արքունիքի ձգտումը՝ միավորելու և հովանավորելու հունադավան եկեղեցիները (ապա նաև երկրները), որոնց կենտրոնն ու պաշտպանը լինելու էր Մոսկովյան պետությունը՝ «Երրորդ Հռոմը»:

Կազանի, ապա և Աստրախանի (1554 թ.), Վոլգայի ու Կասպից ծովի հյուսիսային ափերի ռուսական տիրապետության տակ անցնելը բախտորոշ նշանակություն ունեցավ այդ տարածքի վրա ապրող բոլոր ժողովուրդների, նաև Կովկասի համար:

Ինչպես դեռ 1851 թ. գրել է Ֆ. Էնգելսը, «Ռուսական տիրապետությունը քաղաքակրթող դեր է կատարում Սև ու Կասպից ծովերի և Կենտրոնական Ասիայի ժողովուրդների կյանքում»:

ՎԱԶԳԵՆ ՌՈՍԿԱՆՅԱՆ
Պատմական գիտ. թեկնածու

# ԳԻՇԵՐԱՅԻՆ ԵՐԿԻՆՔ

ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆ

Կապույտ են ներկվել տանիք ու դուռ,
Կապույտ են ներկվել կատար ու լանջ,
Գյուղին են նայում աստղերը լուռ,
Թափանցիկ, ինչպես կռունկի աչք:

Նրանք սարերին մեղմ խշխշում
Եվ բոցկլտում են այնտեղ անվերջ,
Քամին խարույկը նրանց քշում
Ու տարածում է ձորերի մեջ:

Ահա Մեծ Արջն է թափառում
Թաց խոտերի մեջ, լեռնալանջին,
Բույլքն է թթենու ճյուղին թառում՝
Ունկնդիր նրա մեղմ զողանջին:

Եվ զրուցում են գյուղ ու աստղեր,
Ժպտում են իրարով հմայված,
Տները կարծես ճախրում են վեր,
Իսկ երկինքը լուռ թափվում է ցած:

Կարծես երկինքը կապույտ ու պերճ
Խառնում է քունը փոքրիկ գյուղի,
Եվ մանուկներն են նրազի մեջ
Վազում ճամփեքով ճարդագողի:

Նկ. ՋԱՆԻԿ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

# ՄԵՐ դպրանոցը

ԹՈՐԳՈՄ ԳԵՎՈՐԳՅԱՆ

Պառկելուց առաջ մամս դուրս ելավ բակի դարպասը փակելու և վերադառնալով, դիմեց մեզ՝ երեխաներիս.

— Մանչե՛ր, էն ի՞նչն ա, որ կուգա փաշի պես, կնստի աղի պես, կերթա՝ բոշի պես...

Մենք գիտեինք այդ հանելուկը և աղաղակեցինք՝ «Գիտե՜նք, գիտե՜նք, ձյո՛ւնն է, ձմե՛ռը»: Եվ թափով վեր կացանք, դուրս թափվեցինք բակը, տեսնելու առաջին ձյունը, ձմռան գալը...

Խոշոր փաթիլներով, օրոր-շորոր, ոլոր-մոլոր, երկընքից թափվում էր ճերմա՜կ-ճերմակ ձյունը, նստում ծառերի ճյուղերին, ծածկում բակը, դիմացի կալը... Գեղեցիկ էր տեսարանը, հաճելի էր դիտել, բայց շուտով ցուրտ կզգալով, ներս փախանք ու մտանք տաքուկ քուրսու տակ:

Քիչ անց ես հստակ լսեցի մամիս ու մորս խոսակցությունը: Ասում էին, թե ձյունն եկավ, նստում է, կովերն այլևս արածելու չեն գնա, դպրատունը կըբացվի, մանչուն պիտի պատրաստել... Մանչը ես էի:

Ջուր դրին, իմ մազ-գլուխը լվացին, նոր փոխնորդ հագցրին և ուրիշ նախապատրաստություններ էլ տեսան՝ ինձ վայելուչ կերպով դպրոց ուղարկելու համար:

Առավոտ կանուխ հորեղբորս տղան՝ Աշոտը, որ ինձնից երկու տարով մեծ էր, մամիս խնդրանքով եկավ ինձ դպրոց առաջնորդելու: Ես ուսիցս կախեցի տանը կարած պայուսակ-տոպրակս, որի մեջ արդեն կետեղված էին իմ պաշարն ու տախտակ-այբբենարանը, այսինքն՝ իմ առաջին դասագիրքը, ապա վերցրի մամիս պատրաստած ոչխարի թավ մորթին ու մի կտոր վառելափայտ, (որը պարտադիր պետք է հետը դպրոց տաներ ամեն աշակերտ), դրի թևիս տակ ու դուրս եկանք:

Մեր դպրոցի շենքը շատ սովորական, երկհարկանի քարաշեն փոքրիկ շինություն էր, տախտակյա տանիքով, և ո՛չ դրսից, ո՛չ էլ ներսից որևէ աչքի ընկնող հետաքրքիր բան չուներ, և մեր գյուղի այլ երկհարկ շենքերի արանքում նույնիսկ չէր էլ նկատվում: Նրա ներքին հարկը աղջկանց էր հատկացված, վերևինը՝ մեզ, տղաներիս:

Աշոտը, ինձ ցույց տալով դպրոցի ճակատին փորագրվածը, խանդավառությամբ այն կարդաց.

«ՃԱՆԱՉԵԼ ԶԻՄԱՍՏՈՒԹՅՈՒՆ ԵՎ ԶԽՐԱՏ, ԻՄԱՆԱԼ ԶԲԱՆՍ ՀԱՆՃԱՐՈՅ»:

Նա բացատրեց դրանց նշանակությունը... Այդ պահին ես նախանձով, անշուշտ բարի նախանձով, նայեցի Աշոտին և մտքիս մեջ ասացի. «Ե՞րբ պիտի ես էլ կարողանամ Աշոտի պես կարդալ ու հասկանալ...»

Մեր դասասենյակը մի քառակուսի երկարավուն սրահ էր, տախտակյա չներկված հատակով և առաստաղով: Չորս խոշոր պատուհաններ ուներ, այնպես որ լույսը բավարար էր: Տախտակյա մետրաչափ բարձրության միջնորմով այն բաժանված էր երկու խիստ անհավասար մասի՝ մի նեղ նախասրահի, որի աջ կողմը հատկացված էր փայտերին, իսկ ձախը՝ տունամաններին: Մենք մեր բերած փայտերը թողինք փայտանոցում ու շրջվելով դեպի ձախ, հանեցինք տրեխներս, դրինք դարակի վրա ու գուլպաներով միջնորմի դռնից ներս մտանք:

Ես ցնծագին տրամադրությամբ մտա դպրոց:

Ճատ էի երազել այդ օրը... Եվ ահա իրականացել էր փափագս, ոչ թե հոտաղ կամ հովիվ էի, այլ Բագրատոնյան դպրատան աշակերտ, ինչպես կոչվում էր մեր այդ ծխական դպրոցը...

Դպրատան 5—6 դասարանների շուրջ 50 աշակերտներ պարապելու էին ահա այդ մի սենյակում... Բայց այս հանգամանքը դեռ ինձ ոչինչ բացասական չէր ասում, և ամեն ինչ մեր խղճուկ դպրատանը աչքիս կատարյալ էր թվում...

Սենյակի կենտրոնում աշխույժ ճրթճրթում էր փոշատերև փայտով վառվող չուգունե ահագին վառարանը և հաճելի ջերմություն էր սփռում շուրջը: Մեկնից ավելի շուտ եկած աշակերտները օղակել էին վառարանն ու տաք-տաք կրուցում էին... Վառարանի և պատի միջև դրված էր էֆենդու (ուսուցչին այդպես էինք դիմում) բարձրագահ ամբիոնը:

Աշոտը իմ մորթին խնամքով փռեց գետնին, հենց ուսուցչի ամբիոնի ոտքերի մոտ, և ես մեծավարի, ծալապատիկ տեղավորվեցի նրա վրա: Ապա նա ինձ ծանոթացրեց դպրատան մի քանի անհրաժեշտ կարգ ու կանոնին և մի քանի խրատներ տալուց հետո, որպես մեծահասակ աշակերտ, գնաց միացավ վառարանը օղակող տղաներին, իսկ ես սկսեցի ուշադիր դիտել շուրջս:

Ամբիոնից դեպի ձախ ամրացված էր սև գրատախտակը, մոտը՝ կավիճներ ու ջնջոցներ, իսկ ավելի ձախ, պատուհանների միջև խնամքով պատին ամրացված էր սպիտակ թանձր խավաքարտ՝ վրան նըկարված մի գիրք, որի բաց էջերի վրա շատ գեղեցիկ ձեռագրով գրված էր.

Աղաչեմ զձեզ, ո՜վ ընթերցողք, ինձ պահեցեք և կարդացեք,
Թաց տեղ մի՛ դնեք, մոմ վրաս մի՛ կաթեք,
Թքոտ, մրոտ մատով մի՛ շրջեք և անամոթաբար մի՛ պատառոտեք...
Թե ուրիշից եք փոխ առել՝ ժամանակի՛ն վերադարձուցեք...

Իհարկե, ես այն օրը չէի կարող կարդալ այդ: Գրվածի մասին ես հետո իմացա, ըմբռնեցի իմաստը և հավիտյանս չեմ մոռանում:



Այդ էր մեր դպրատան ամբողջ զարդարանքը: Չուներ քարտեզ, պլակատ, նույնիսկ թվաբանական աղյուսակ կամ «Է» տառով գրվող բառերի ցուցակ, որը շատ կարևոր էր: Դրանց փոխարեն մի անկյունում, փայտանոցից վերև, ընկած էր արևելյան հին դպրոցների հռչակավոր ֆալախկան, որի տեսքը անմիջապես մթագնեց իմ տոնական, ցնծալից տրամադրությունը, և ես շուռ տվի երեսս... Թեև լսել էի, որ այս ուսուցչի օրոք ֆալախկան երբեք գործի չէր դրվել, այսինքն նրանով ոչ ոք չէր պատժվել, բայց և այնպես, նրա մասին այնքան զարհուրելի պատմություններ էին մնացել ժողովրդի մեջ, դեռ «Եղիցի-եղիցի» տիրացու-վարժապետի ժամանակներից, որ ես ինձ շատ վատ զգացի: Դրա ներկայությունը թեկուզ փայտանոցում, ոչ մի լավ բան չէր խոստանում ինձ...

Սրահի երկու կողմում շարված էին վեց երկարավուն դպրոցական գրասեղան-նստարան, ամեն մեկը վեց աշակերտի համար. մյուս աշակերտները պիտի նստեին հատակին, իրենց բերած մորթիների վրա: Այդ նստարանները, ի՞նչ խոսք, որ շատ հեռու էին իսկական դպրոցական նստարան կոչվելուց, այնուամենայնիվ, շատ գերադասելի էին գետնին նստելուց:

Իմ կողքին իրենց մորթիները փռեցին ամառվա հովիվ ընկերներս՝ Քամունց Սերոբը, Ճինպողոսանց Փիլոսը և Լուսիկի Ուսեփը: Նրանց հարևանությունը ինձ սրտանց ուրախացրեց: Մենք լավ ընկերներ էինք:

Վերջապես եկավ ուսուցիչը և մեկեն տիրեց խոր լռություն...

Խոտորջրի բոլոր դպրոցները երկարօրյա էին, այսինքն՝ պարապմունքները տևում էին առավոտից մինչև ուշ երեկո:

Մեր դպրոցում ընդունված էր, որ ճաշի ժամանակ բարձր դասարանցի երկու աշակերտ, փոխնիփոխ, ըստ հերթականության, ուսուցչի ամբիոնից կարդան ուսուցչի նախապատրաստած որևէ հետաքրքիր պատմություն:

Ահա դրանցից մեկը.

— Լինում են երկու հարազատ եղբայր, որոնք ըստ գոյություն ունեցող օրենքի, հոր մահից հետո բաժանվում են ու հորից մնացած ժառանգությունը հավասարապես բաժանում իրենց միջև: Նրանք ունենում են նաև մի ցորենի արտ, արդեն հնձած, խուրձ կապած և արտի մեջ դիզված: Այն նույնպես հավասարապես կես են անում և նոր դեզեր կարկում արտի մեջ:

Առաջին գիշերը, երբ եղբայրները արդեն տարբեր բնակարաններում պառկում են քնելու, ավագ եղբայրը չի կարողանում հանգիստ քնել, ամբողջ ժամանակ մտածում է մենակ մնացած կրտսեր եղբոր մասին: «Ես,— ինքն իր հետ մտմտում է նա,— այնպես էլ երջանիկ եմ իմ երեխաներով ու կնոջով, իսկ փոքր եղբայրս մե՜ն-մենակ, անընտանի՜ք... Գնամ արտը, իմ խրձերից մի տասը խուրձ ավելացնեմ եղբորս խրձերին, թող նրա հացը առատ լինի, ու նա էլ դրանով ուրախանա»: Եվ գիշերով սուս ու փուս գնում է արտը, իր դեզից տասը խուրձ վերցնում, փոխադրում է եղբոր դեզի վրա ու էլի աննկատ վերադառնում տուն, մտնում անկողին ու արդեն հանգիստ քուն մտնում: Իսկ կրտսեր եղբայրը, մտնելով անկողին, երկար շուռ ու մուռ է գալիս, չի կարողանում քնել: Նրան տանջում է այն միտքը, թե իր ավագ եղբայրն այժմ ինչպե՞ս պիտի պահի իր մեծ ընտանիքը... «Գնամ ինձ բաժին ընկած խրձերից տասը խուրձ դնեմ եղբորս դեզին, թող նրա հացը չպակասի ու դրանով ուրախանա»: Եվ այդպես էլ անում է. գիշերով գնում է արտը, տասը խուրձ ավելացնում եղբոր դեզին և, վերադառնալով տուն, հանգիստ ու երջանկացած քուն մտնում:

Մյուս օրը երկու եղբայրն էլ իրարից անկախ գնում են արտը և տեսնելով, որ դեզերը անփոփոխ են մնացել, մնում են զարմացած: Եվ ամեն մեկը ենթադրելով, թե ինքը շտապելուց սխալվել է, մտքի մեջ որոշում է գիշերը էլի գնալ արտը և տասը խուրձ տեղափոխել եղբոր դեզի վրա: Այդպես էլ անում են, իբր սխալը շտկում են... Բայց որքան մեծ է լինում նրանց զարմանքն ու տարակուսանքը, երբ հետևյալ ցերեկն էլ գնալով արտը, դեզերը անփոփոխ են գտնում...

Եվ երրորդ գիշերը, երբ մութն ընկնում է, եղբայրները գնում են արտը և խրձերը գրկներին տեղափոխելիս հանդիպում, դեմ են առնում իրար... Եվ հասկանում են, թե ինչու խրձերի քանակը մնում էր անփոփոխ...

Այսպիսի պատմությունները դաստիարակում, լավի օրինակ էին աշխատում տալ իրենց ժամանակի ագահ մարդկանց, որոնք կյանքում հաճախ հակառակն էին անում՝ ով ում կարողանում էր վրկել՝ վըրկում էր և նրա հաշվին հարստանում:



Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ



Լուսանկարը՝ ԶԱՎԵՆ ԲԵՏԻԿՅԱՆԻ

# ՀՐԱԶԴԱՆ

ԱԼԲԵՐՏ ՇԱՀԱԶԻԶՅԱՆ

Երևանը Արարատյան գոգավորության ծայրին է, իսկ նրանից դեպի հյուսիս՝ Աբովյան քաղաքից անմիջապես հետո, սկսվում է Հրազդանի շրջանը: Ընդամենը երեսունհինգ կիլոմետր, բայց ինչպիսի տարբերություն: Ծաղկունքով զուգված սար ու ձոր, ասվեբախիտ անտառներ, առողջարար օդ, վուլալ ու վըրնգուն աղբյուրներ:

Հայոց աշխարհի հնագույն Վարաժնունյաց գավառի մի մասն է եղել այս հողը: Փամբակի ու Ծաղկունյաց լեռների միջև ընկած հարուստ մի շրջան՝ Մարմարիկի գեղատեսիլ հովիտը: Շռայլ ու շքեղ է բնության այս անկյունը: Կլիման մեղմ է: Լանջերը ծածկված են կովասուն անտառներով, իսկ ներքևում գետափին, բխում են հանքային բուժիչ աղբյուրներ: Այստեղ պիոներական ճամբարների կողքին գործում է նաև «Հանքավան» առողջարանը, որը հռչակ է վայելում իր հանրահայտ ջրով ու կազդուրիչ օդով:

Հովիտը հայտնի է նաև օգտակար հանածոների այնպես պաշարներով: Այստեղ մեր երկրաբանները հայտնաբերել են պղնձամոլիբդենային հանքավայրեր, նաև ալյումինի ու քիմիական նյութերի ստացման համար հումք, որ կոչվում է նեֆելինային սիենիտներ, ապա երկաթ, գույնզգույն մարմար, դոլոմիտ և այլ հանքատեսակներ ու շինանյութ: Պետությունը միլիոնավոր ռուբլիներ է ծախսում գործարաններ, ֆաբրիկաներ, ձուլարան և հզոր էլեկտրակայաններ կա-

## ՄԱՅՐԻԿԻՍ

ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ

Կրկին աշուն է, աշուն,
կրկին նստում ես դու
մաշված ստվերի տակ
մեր ծեր կաղամախու:
Արեգակն է դողում,
գույների մեջ դեղին,
ճերմակ թել է շողում
քո մազերի սևին...

Չվող երամը տես,
մայր, քո գլխի վերև,
գլխաշորիդ գցեց
մի ոսկեգույն տերև:
Աշնանամուտ է կրկին,
կրկին երգում ես դու...
մաշված ստվերի տակ
մեր ծեր կաղամախու...

## ԱՐԴԵՆ ԱՇՈՒՆ Է

ՀՈՎԻԿ ՎԱՐԴՈՒՄՅԱՆ

Ամպերը, կանաչ հարթավայրերով,
Վարգում են ճերմակ ձիերի նման
ու խրխնջում են:

Արևի շողը նստել է քարին,
բոբիկ ոտքերի փշերն է հանում
ու քրքջում է:

Անտառը դեղնած, դալուկ մատներով
Հոգնած ճյուղերն է թափ տալիս մեկ-մեկ
ու հառաչում է:

Չվող թռչունները, անհայտ տագնապով,
պտտվում օդում,
միմյանց հուշում են.
— Արդեն աշուն է: Արդեն աշուն է:

## ՀԱՅՐԵՆԻ ԳՅՈՒՂՈՒՄ

ՎԱՀԱՆ ԳԵՎՈՐԳՅԱՆ

Հայրենի գյուղի
Արձակ դաշտերում
Ծղրիդներն հիմա
Հասկերի դեղնած
Հեքիաթն արևոտ
Տանում են հեռու...
Ու անձրևի
Կաթիլները ջինջ
Կախվում են օդում
Ցորենի հասուն
Հատիկների պես:
Հայրենի գյուղի
Դաշտերում հիմա
Խաղաղությունն է
Ծփում ծավալվում
Ծղրիդների պարզ
Նվագի ներքո:

ռուցում այդ հանքերը մշակելու համար: Այսպիսով, Սևանի ավազանի և Գուգարքի շփման տեղում ստեղծվել է Հրազդան-Սևան արդյունաբերական, էներգետիկ և հողերի ոռոգման մի հզոր հանգույց, որը կարևոր նշանակություն ունի հարևան շրջանների և ողջ հանրապետության առջև կանգնած տնտեսական մի շարք խնդիրներ լուծելու համար: Չպետք է մոռանալ նաև Սևանի կասկադի հիդրոէլեկտրակայանները, որոնցից մեկը գտնվում է Սևանում, երկուսը՝ Հրազդանում, մեկը՝ Աբովյանում և երկուսը՝ Երևանում: Այդ հիդրոկայանները վերևից ներքև «շարված» են Սևանա լճից սկիզբ առնող միակ գետի՝ Հրազդանի ողջ երկարությամբ՝ ակունքից մինչև Երևան, որտեղ գետը մտնում է խոր ձորի մեջ: Մի երկու տասնամյակ առաջ, երբ հերթով կառուցվում էին այդ հիդրոկայանները, նրանց հետ գոյանում էին շինարարների բանվորական ավաններ: Դրանք թափով սկսեցին աճել, երբ կառուցվեց Երևան-Հրազդան-Սևան երկաթուղագիծը: Սովետական Միության ամենաբարձր երկաթուղին: Նրա վերին կետը հիմա արդեն ծովի մակերևույթից բարձր է ավելի քան երկու հազար մետր:

Դժվարին ճանապարհ է եղել այդ: Կատարվել են հզոր պայթեցումներ, արվել հիսուն մետր բարձրությամբ արհեստական հողաթմբեր, հարյուր քսանհինգ կամուրջ, ուղանցույց և այլ կառույցներ: Ահա թե ինչպիսին է դեպի լեռները ձգվող այս երկաթուղագիծը: Նրան զուգահեռ անցնում է մայրաքաղաքի զարկերակը՝ Երևան-Հրազդան-Սևան մայրուղին: Մեծ բեռնալարվածություն ունեցող այս առաջնակարգ ավտոճանապարհը Երևանը կապում է ինչպես մեր հյուսիսարևելյան շրջանների, այնպես էլ Ադրբեջանի, Վրաստանի և նրանց մայրաքաղաքներ Բաքվի ու Թբիլիսիի հետ:

Ամեն առավոտ, հազարավոր բանվորներ, շինարարներ, ինժեներներ և շատ այլ մասնագետներ, գնացքով ու ավտոմեքենաներով Երևանից սլանում են դեպի իրենց աշխատավայրերը՝ Աբովյան, Արզնի, Նոր Հաճն, Լուսակերտ, Չարենցավան, Հրազդան, Գագարին, Սևան: Մեր հանրապետության քարտեզի վրա մինչև հիդրոկայանների ու երկաթուղու կառուցումը այսպիսի քաղաքներ ու քաղաքատիպ ավաններ չեն եղել: Զարգացող կյանքը բերեց նրանց իր հետ, և հիմա նրանք են ազդում մեր կյանքի զարգացման վրա:

«Հրազդան գետակդ իմ հայրենի»...

Մեր հանրապետական ֆուտբոլային մեծ ստադիոնը, որ 75 հազար մարդ է տեղավորում, գտնվում է հենց նույն գետի վրա և կոչվում է նրա անունով: Կա նաև կինոթատրոն՝ «Հրազդան»: Կա սիգարետ «Հրազդան»: Ամենից հուզիչը, պարծանահրաշ մեր հաշվողական մեքենաներն են, որի մի սերունդը «Հրազդան» մակնիշով, գնացել է աշխարհից աշխարհ: Եվ, վերջապես, այն ափամերձ հինավուրց Ախտա գյուղը, մի քանի տասնամյակ առաջ, մի քանի հարյուր տնտեսություն ուներ, գետնափոր տնակներ՝ ձմեռվա բքի ու խավարի մեջ թաղված: Այժմ արդյունաբերական և էներգետիկ խոշոր կենտրոն է, հարյուր հազար բնակչի համար կառուցապատվող Հրազդանի բանվորական միկրոշրջանով, որ մի քաղաք է քաղաքի մեջ, բազմահազար մարդ է այնտեղ ապրում: Սա էներգետիկների և լեռնագործների հիմնադրած բնակավայրն է:

Միկրոշրջանից քիչ այն կողմ, սկսվում է «հզոր դաշտը»: Այդպես ենք ասում, որովհետև այստեղ են գործարկվել երկու հզոր ջերմաէլեկտրակայանները, նրանք տարեկան միլիարդավոր կիլովատտ-ժամ էլեկտրաէներգիա են տալիս երկրին:

Հրազդանի շրջանի մեջ է մտնում Ծաղկաձորը՝ մանկական ամառանոցը: Ծովի մակերևույթից 1800 մետր բարձրության վրա, Թեղենիս լեռան շուրջը, բացատներում ու ձորակներում տասնյակ պիոներական ճամբարներ կան, մանկապարտեզներ և հանգստյան տներ՝ մոր և մանկան, նկարիչների, բանվորների, գրողների...

Ծաղկաձորը մտնում է պատմական Կեչառույք գավառի մեջ: Ծաղկաձորի հյուսիսարևմտյան բարձունքին մինչև օրս էլ կանգուն է Կեչառիսի հուշարձանախումբը, որոնցից ամենահինը 1003 թվականին կառուցել է տվել միջնադարի նշանավոր գիտնական և փիլիսոփա Գրիգոր Մագիստրոսը: Վերջին հուշարձաններից մեկը՝ կաթողիկեն Վասակ իշխանի հանձնարարությամբ կառուցել է Վեցիկ ճարտարապետը՝ միջին դարերի հայ նշանավոր շինարարներից մեկը: Բայց գործը ավարտին չհասած, մահացել է նա և թաղվել նույն տեղում: Շինարարությունը առաջ են տարել նրա երեք եղբայրները, որոնք մի գեղեցիկ խաչքար-մահարձան են կանգնեցրել իրենց եղբոր՝ Վեցիկի հիշատակին:

Իր խնձորներով հռչակված Արզականով մտնենք Հրազդանի կիրճը: Ընդամենը մի հինգ կիլոմետր և մեր առջև բացվում է պատմական Բջնի գյուղի համայնապատկերը:

Վայրկյանում ութ լիտր բուժիչ ջուր է տալիս Բջնին, որի մի մասը շշերով հասնում է մեզ, ինչպես «Հանքավանը»: Հրազդանը հարուստ է այդպիսի ջրերով:

Նայեցեք ուղղաձիգ ժայռերով շրջապատված սարահարթին: Շատ հին ժամանակներում, հսկա քարերով շարված բերդ է եղել այստեղ, որն իշխել է շրջակայքի վրա և պաշտպանել թշնամիներից: Հետագայում, մեկանից հազար տարի առաջ, այստեղ Պահլավունի իշխաններն իրենց ամրոցն են ունեցել: Դեռևս

*հինգերորդ դարում Բջնին ձեռագիր մատյաններում հիշատակվում է որպես «Երևելի գյուղ», «Ամուրն Բջնի», տասներորդ դարում՝ արդեն որպես բերդաքաղաք: Այստեղ Գրիգոր Մագիստրոսը, հոր՝ Վասակ իշխանի կոհվելուց տաս տարի հետո, 1031 թվականին, կառուցել է տպլիս մի հիանալի վանք, որ կանգուն է մինչև օրս: Այս վանքում բացել է նա բարձրագույն դպրոց, որ կոչվել է «Մագիստրոսի ճեմարան»: Գրվել են բազմաթիվ ձեռագիր գրքեր և արտագրվել: Գործել են նշանավոր վարպետներ, որոնք մեծարժեք հուշարձաններ են կառուցել և խաչքարեր քանդակել:*

*Դուրս գանք ձորից, մեր օրերի թարմ շունչը լսելու համար: Այս ի՜նչ հիասքանչ քաղաք է գետի ձախ ափին, բարձր սարահարթի վրա:*

*Դա ջահել ու կրնգուն Չարենցավանն է:*

*Քաղաք, որի առաջին վրանները խփեցին Գյումուշի էլեկտրակայանի կառուցողները 1947 թ. Արզափաս գյուղի «Խաչեր» կոչվող հանդամասում: Չարենցավանն այսօր բազմահազար բնակիչ ունի, մոտ տասը գործարան, դպրոցներ ու տեխնիկումներ, կուլտուրայի օջախներ ու պիոներային, բազմահարկ, տուֆակերտ շենքերով կառուցապատված արևոտ թաղամասեր, ասֆալտապատ փողոցներ:*

*Ծանր արդյունաբերությունն է զարգանում այս արագորեն աճող քաղաքում: Չարենցավանի գործարանները մեր երկրի ժողովրդական տնտեսությանը տալիս են մետաղահատ հաստոցներ, սև ու գունավոր մետաղի ձուլվածք, գործիքներ, հավաքովի երկաթբետոնե կառուցվածքներ և այլն:*

*«Չարենցավան» մակնիշով արտադրանք է ուղարկվում 3500 հասցեով: Բացի Սովետական Միության քաղաքներից, աշխարհի տասնյակ երկրներ նույնպես, ծանոթ են այդ անվանը: Այստեղ ապրում և աշխատում են տասներկու ազգությունների ներկայացուցիչներ, այդ թվում՝ լատիշներ, էստոնացիներ, թաթարներ, վրացիներ, մոլդավներ:*

*«Չարենցավան» կայարանից նստենք գնացք և նորատունկ խնձորի այգիների, նոր կյանք ու շունչ առնող սարավանդների միջով իջնենք Երևան:*

*Արդեն ետևում են մնացել կոլտնտեսային քարաշեն գյուղերը՝ իրենց բերքառատ դաշտերով, իրենց հարուստ ֆերմաներով: Իր աշխատանքի հերոսներով հպարտացող Ֆանտանը, հացառատ Սոլակը, Քաղսին, Մեղրաձորը, Ջրառատը հաց, միս, կաթ, ձու և այլ գյուղատնտեսական թարմ մթերքներ են մատակարարում բանվորական Հրազդանին: Իսկ երբ ազատվում են դաշտային աշխատանքներից, հողագործները դառնում են բետոնագործներ, դառնում են ամեն գործի վարպետներ՝ շենացնում են արդյունաբերական այս հզոր շրջանը:*

ՀԱՅԿ ՀԱՐՈՒ-
ԹՅՈՒՆՅԱՆ



(Գիտաֆանտաստիկ
պատմվածք)

# ԱՅԴ ԱՄԵՆԱՍՈՎՈՐԱԿԱՆ ՄՈԼՈՐԱԿ ԵՐԿԻՐԸ

Ամարյա ամեն երեկո Օլի Գրինըն ինձ պատմում է Երկրի մասին այն պատմությունները, որոնք ես անթիվ անգամ լսել եմ փոքր ժամանակ: Նա ինքն էլ երբեք չի տեսել այդ մոլորակը, սակայն այնպես է պատմում, կարծես ամբողջ կյանքն այնտեղ է անցկացրել:

Երբ փոքր էի, Երկրի մասին ինձ պատմում էր հայրս: Նրա պատմածներն ուրիշ էին՝ խկական երկրացու պատմություններ: Ես հաճույքով էի լսում նրան, իսկ մայրս տխրում էր: Նա միշտ ասում էր, որ Երկրից լավ մոլորակ չկա ամբողջ Տիեզերքում, որ Երկիրը բոլոր հեքիաթներից ամենագեղեցիկն է:

Հետո հայրս ու մայրս փոքր եղբորս հետ մնացին Կ—2 աստղի չորրորդ մոլորակում: Ճիշտ է, նրանք էլ շատ էին ուզում թռչել մինչև Երկիր, բայց հայրս ասաց, որ իրեն վաղուց են հրավիրել այդ մոլորակից: Նա այնտեղ գերերկար աստղային թռիչքների մասին դասախոսություններ էր կարդալու աստղանավորդների դպրոցում: Նավում էլ նա անընդհատ նավորդության հրապույրների մասին էր խոսում և կարծես ցանկանում էր բոլորին նավորդ դարձնել: Դա նրան, իհարկե, չհաջողվեց, սակայն նրան սփոփում էր այն, որ Օլին, ում նա իրենից հետո հանձնեց նավորդությունը, մի օր հիանալի նավապետ է դառնալու...

Իսկ ես աստղանավում մնացի հորս խորհրդով: Նավը թողնելուց առաջ նա ասաց, որ ինձ անպայման անհրաժեշտ է գոնե մի անգամ լինել Երկիր մոլորակում:

— Այցելի՛ր Երկիր,— ասաց նա,—և կհասկանաս, թե ուր են տանում տիեզերական բոլոր ճամփաները...

Կ—2 աստղի մոտ ուրիշ մի քանի հոգի էլ թողեցին նավը, և հիմա հին սերնդից քչերն են վերադառնում մեզ հետ: Հին սերնդի մարդիկ բոլորն էլ անհասկանալի տարօրինակություններ ունեն, ո-



րոնք անտես սահման են դնում մեր ու նրանց միջև: Նրանց հետ կրուցելիս շարունակ ստիպված ես լինում հիշել ինչ-որ ավելորդ պայմանականություններ, որոնցից, միևնույն է, ոչ մի օգուտ չկա...

Արշավախմբի ղեկավար Տոն Ջերան ի պաշտոնե ստիպված էր չլքել աստղանավը: Ճիշտ է, հիմա այլևս արշավախումբը գոյություն չունի: Այն իր գործն անելուց հետո կամաց-կամաց ցրվել է վերադարձի ճանապարհին, և այժմ մենք միայն աղոտ պատկերացում ունենք, թե ինչ նպատակով էր մեր նավը թռել դեպի Ստենլի մոլորակը: Սակայն մենք բոլորս էլ Տոն Ջերային համարում ենք մեր ղեկավարը և մեկ էլ նրա արշավախմբի անդամներ ենք երևակայում:

Մասնագիտությամբ նա պատմաբան է, բայց ավելի շատ Երկիր մոլորակի ապագայի մասին է խոսում: Միայն երբեմն-երբեմն նա մի քանի հազարամյակ միանգամից ետ է թռչում ու սկսում պատմել ինչ-որ անհիշելի ժամանակների մասին, երբ եղել են ստրուկներ ու տերեր, մարդիկ կռվել են ու սպանել իրար, ապստամբություններ են եղել: Այդ ամենը սաստիկ հետաքրքիր է և միաժամանակ անհասկանալի...

Ընդհանրապես հին սերնդի մարդկանց համարյա բոլոր պատմությունները անհասկանալի են: Երկրի մասին այնպիսի բաներ են պատմում, որ հազար տարի տանջվեի, հնարել չէի կարողանա:

Մի անգամ ծերուկ նկարիչ Գանի Շեին խնդրեցի ինձ համար նկարել Ալ՝ Դեբարանը, իսկ նա այնպիսի կարմանքով նայեց դեմքիս, որ ծիծաղս պահել չկարողացա:

— Ալ՝ Դեբարանը,— կրկնեցի ես, մտածելով, թե նա չի հասկացել,— աստղը:

— Հասկացա, երիտասա՛րդ, հասկացա: Աստղը... Իսկ դու փորձե՞լ ես պատկերացնել, թե իրենից ինչ կներկայացնի այդ... նկարը,— բարկացած հանդիմանեց նա:— Սև ֆոն և մի պայծառ աստղ: Չէ՞... Դա գռեհիկ է, հրեշավոր գռեհիկ...

Ես այդ օրը չնայեցի նրա նկարած բազմաթիվ երկրային տեսարաններին: Վիրավորված ու առանց հրաժեշտ տալու հեռացա նրա մոտից...

Ոչ մի կերպ չեմ կարողանում հասկանալ նրանց: Ի՞նչ են կպել այդ ամենասովորական մոլորակ Երկրից և ինչպե՞ս են նրանք այդպիսի անտարբերությամբ նայում աստղերին: Աստղերն ամենամեծ սրբությունն են մեզ համար, ոչ մի բանի հետ չհամեմատվող սրբություն: Եվ ես չեմ կարողանում պատկերացնել մի այլ տեսարան, որ կարողանա մրցել Տիեզերքի՝ այդ բազմագույն ու խորհրդավոր աշխարհի հետ:

Բայց հին սերնդից կա մեկը, որի հետ հնարավոր է լեզու գտնել, կրուցել աստղերի մասին ու հիանալ նրանցով: Դա Լիլիթի հայրն է՝ աստղագետ Զենոն Ռշտունը: Նա էլ ամեն անգամ մեզ հետ նստում է մթնեցրած Մեծ Սրահի ամբողջ պատը բռնող լուսանցույցի մոտ ու նայում նավից դուրս գտնվող աշխարհին: Իսկ դիտման ժամերից հետո նոր բաներ է պատմում աստղերի կյանքի մասին:

Միայն թե նա էլ երբեմն, կիսատ թողնելով դիտումը, հեռանում է՝ ասելով, թե հոգնել է և գնում է հանգստանալու: Սակայն հետո ես Լիլիթից իմացա, որ նրա հայրը ամենևին էլ հանգստանալու չի գնում: Նա գնում է ֆիլմադարան ու հիշում Երկիրը:

— Զարմանալի մարդ է հայրըս,— հառաչեց Լիլիթը:— Բոլորը կարծում են, թե նա չի մտածում իր մոլորակի մասին, այնինչ նա շատ է կարոտում Երկրին:

Դա ինձ համար ցնցող հայտնագործություն էր:

— Ինչպե՞ս թե,— ապշեցի ես:— Աստղագետն ինչո՞ւ պետք է կարոտի ինչ-որ մոլորակի: Շրջապատում այնքա՞ն աստղեր կան:

— Դու դեռ շատ բան չես հասկանում,— կշտամբեց ինձ Լիլիթը:— Երկիրը նրա հայրենիքն է և ոչ թե ինչ-որ մոլորակ...

Այդ բացատրությունն էլ ոչինչ չպարզեց ինձ համար: Դե, եթե Լիլիթի հայրն աստղագետ է, ուրեմն թող նստի ու աստղածիլներիս (այդ անունը մենք ենք հնարել մեզ համար) հետ հիանա Տիեզերքի հրաշալիքներով, թե չէ... կարոտում է Երկրին: Ես, օրինակ, այս նավ տեղափոխվելուց հետո այս նավը երևի չհիշեի էլ: Դե Երկիրն էլ...

— Ճիշտ որ դու ոչինչ չես հասկանում,— առանց բարկանալու հանդիմանեց Լիլիթը և ուրիշ ոչինչ չավելացրեց: Երևի ինքն էլ կարգին չէր հասկանում:

Այնուամենայնիվ ես որոշեցի անձամբ ստուգել նրա ասածները: Ես չէի կարողանում հաշտվել այն մտքի հետ, թե աստղագետը կարող է կարոտել մի շատ սովորական մոլորակի, թեկուզ և այն իր հայրենիքը լինի:

Մի օր, երբ աստղագետը հեռացավ, ես էլ վեր կացա և ուզում էի գնալ նրա ետևից:

— Այդ ո՞ւր,— Օլին բռնեց թևըս:— Շուտով Կապույտ ու Դենին աստղերն են հանդիպելու:

— Ես ինձ մի քիչ վատ եմ զգում,— ճիշտ Զենոն աստղագետի նման ասացի ես: Նա ցանկանում էր ոտքի ելնել ինձ օգ-

նելու, բայց ես թույլ չտվեցի:— Դու նայի՛ր, ես ինքս...

Գնացի ֆիլմադարան և գաղտագողի ներս մտա: Աստղագետն այնտեղ էր: Ես նայեցի էկրանին: Երկրային ֆիլմ էր: Մի քանի հոգի նստել էին թույլ բոցկըլտացող կրակի շուրջը և խոսում էին: Հավանաբար զրույցը շատ հետաքրքիր էր, բայց ես ոչինչ չէի հասկանում: Փորձեցի պատմությունից հիշել, թե մարդիկ ընդհանրապես ինչու են նստում կրակի շուրջը: Ես մտաբերեցի Տոն Չերայի պատմություններն այն մասին, թե ինչպես մի ժամանակ մարդիկ կրակ են պաշտել: Բայց դա շատ վաղուց էր եղել, իսկ ֆիլմը բոլորովին էլ հին չէր:

Ստիպված դիմեցի աստղագետին:

— Դո՛կտոր,— հայրս պահանջում էր, որ բոլորին դիմեմ երկրային անհասկանալի կոչումներով,— դա ի՞նչ բան է...

Նա դանդաղ շուռ եկավ և ինձ տեսնելով՝ ժպտաց.

— Այդ դո՞ւ ես՝ աստղային ռոմանտիկը: Դու է՞լ հոգնեցիր... աստղերից:

— Չէ՛, ես պարզապես ուզում էի համոզվել, որ դու իրոք երկրային ֆիլմեր ես դիտում... Դա ի՞նչ բան է:

Նա մի պահ զարմանքով նայեց ինձ, և ես հասկացա, որ չափազանց անքաղաքավարի եմ արտահայտվել: Հետո նա կրկին շրջվեց էկրանի կողմն ու ինձ հրավիրեց իր մոտ:



Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

— Դժվար թե կարողանամ մի բան հասկացնել քեզ: Դա Երկիրն է, մարդիկ, բնությունը: Հասկանո՞ւմ ես, մարդիկ անտառում են: Դու, ախր, չգիտես ինչ բան է անտառը...

Ես, իհարկե, գիտեի: Անտառը շատ ծառերի բազմությունն է:

— ...Հիմա արդեն գիշեր է: Դու գիշերն էլ չգիտես:

Ես գիշերն էլ գիտեի: Այդ ժամերը քնելու համար են:

— ...Նրանք խարույկ են վառել ու հավաքվել զրույցի: Այդպիսի պահերին մարդ իրեն ըզգում է իսկապես շատ ազատ ու շատ մարդկային: Պատկերացնո՞ւմ ես, կողքից հոսում է առվակը, հեռվում ինչ-որ տեղ կայծակն է որոտում: Օդում տարածվում է օզոնի բույրը... Դու, ախր, չգիտես դրանք:

Իսկ ես գիտեմ: Կայծակն էլեկտրական պարպում է, որ տեղի է ունենում մթնոլորտում: Օզոնն էլ թթվածնի եռատոմ միացություն է:

— Օզոն, ծուխ, մի քիչ խոնավ հող... Հող,— աստղագետը մի պահ լռեց:— Հետո կամացուկ սկսում է անձրև կաթկթել: Կրակն սկսում է թշշալ, և բոլոր բույրերին խառնվում է այրվող թաց փայտի բույրը: Իսկ ծաղիկնե՞րը: Չգիտեմ ինչպես բացատրեմ քեզ: Մինչև Երկիր չհասնես, դու չես հասկանա, թե ինչպիսին են ծաղիկները...

— Աստղանավի այգում շատ ծաղիկներ կան,— այլևս չհամբերեցի ես:

— Է՛, դրանք ի՞նչ ծաղիկներ են: Դա նույնն է, թե ասես այգու արհեստական անձրևն անձրև է...

Ես այդպես էլ չզգացի տարբերությունը. դե, անձրևը անձրև է, իսկ ծաղիկը՝ ծաղիկ:

— Չէ, Երկիրն ուրիշ է,— շարունակեց աստղագետը:

— Այն բոլոր հեքիաթներից ամենագեղեցի՞կն է,— հարցրի ես:

— Այո՛, իսկապես, որ հեքիաթներից ամենագեղեցիկը:

Էկրանին կանաչով ու բազմագույն ծաղիկներով ծածկված բըլուրներ էին: Մի տղա ծաղիկ էր հավաքում: Հետո նա այդ ծաղիկները գրկած տարավ մի աղջկա, որը քիչ հեռվում նստած ժպտում էր նրան...

Ես դուրս եկա ֆիլմադարանից: Ինձ անհասկանալի զարմանք էր պատել, և մի այլ զգացում, որը հավանաբար երբեք նկարագրել չեմ կարող: Դրանից առաջ էլ ես բազմաթիվ երկրային ֆիլմեր էի դիտել, սակայն ինձ հետ երբեք նման բան չէր կատարվել, և ես անընդհատ մտածում էի՝ փորձելով ինքս ինձ բացատրել, թե ինչ փոխվեց:

Մեծ Սրահ վերադառնալ չէի ցանկանում: Կես ժամից ուզում էի թեքվել դեպի այգին, երբ մեկը բռնեց թևս: Ինան էր, որին մթի մեջ չէի նկատել:

— Ինա՞,— համարյա անտարբեր ժպտացի ես:— Դո՞ւ ես:

— Ես եմ,— նրա ձայնը մի տեսակ շփոթեցրեց ինձ:

— Ի՞նչ ես անում այստեղ,— հարցրի ես:— Ինչո՞ւ աստղերին չես նայում:

Նա չպատասխանեց: Ես նոր միայն զգացի, որ նա դեռ բաց չի թողել թևս: Նրա մատներն զգույշ օղակել էին դաստակս, և այդ հպումից չգիտեմ ի՛մ, թե՞ նրա սրտի աշխատանքն էի զգում: Այդ պահին, կյանքումս առաջին անգամ, հայտնագործեցի, որ ձեռք եմ ունեցել: Դրանից ավելի շփոթվեցի:

# Հակոբ Հակոբյան



Ուշ աշնանն ու վաղ գարնանը նկարիչ Հակոբ Հակոբյանին հաճախ կարելի է հանդիպել Երևանի շրջակա այգիներում: Այդ օրերին նա ջրաներկերով թղթին է հանձնում իր փնտրածը, իր տպավորությունները, որոնք արվեստանոցում վերածվում են խոշոր բնանկարների: Հակոբյանի պեյզաժները առավելապես դաշտային տեսարաններ են, ունեն մոխրավուն, ո՛չ ինչեղ երանգավորում և իրենց տրամադրությամբ մոտ են տերյանական բանաստեղծություններին:

Իսկ ինչո՞ւ վաղ գարուն կամ ուշ աշուն,— կարող եք հարց տալ,— չէ՞ որ Հայաստանի բնությունը մեզ պատկերանում է առավել գունագեղ ու լուսառատ, մի բան, որ հատուկ է նաև մեր նկարչությանը:

Դա ճիշտ է: Բայց եկեք հիշենք ամենակարևորը: Ամեն մի ճշմարիտ արվեստագետ, որքան էլ օգտվում է բնության գույներից, ունի իր սեփական գույներն ու սեփական գծանկարը, որոնք ձուլվելով ընտրված այս կամ այն տեսարանին, բացահայտում են նրա ներքնաշխարհը, մարդկային զգացումներն ու խոհերը, մի խոսքով՝ բնորոշում են նրա անհատականությունը:

Արվեստագետի աշխարհընկալումը սկսում է ձևավորվել մանկական տարիքից:

Հակոբ Հակոբյանը ծնվել է Եգիպտոսի Ալեքսանդրիա քաղաքում: Յոթ տարեկան՝ նա կորցնում է հորը: Զարուհի մայրիկը ստիպված է լինում երեք զավակներից մեկին՝ Հակոբին ուղարկել Կիպրոս, հայկական Մելքոնյան գիշերօթիկ դպրոցը: Ծանր, ընտանիքից հեռու անցած պատանեկությունը խոր հետք է թողնում ապագա նկարչի հոգում: Պատահական չէ, որ Հակոբյանը ստեղծագործական իր կյանքը սկսում է թշվառ, կյանքի բեռի տակ կքած, հուսակտուր մարդկանց նկարելով: Այդ գործերի մեջ, սակայն, նկարիչը շեշտել է ո՛չ այնքան մարդկանց ֆիզիկական (մարմնական) տանջանքը, որքան հայրենիքից հեռու, օտար ափերում հեծող իր սերնդակիցների տխուր հոգեվիճակը:

*1962* թվականին Հ. Հակոբյանը ընտանիքով գալիս է Հայաստան: Հայրենիքում նա չէր կարող, ան-

---

— Ինա՛, ինչո՞ւ չես նայում աստղերին,— շփոթված կրկնեցի ես:— Կապույտ ու Դեղին աստղերն էին հանդիպելու: Գուցե կանաչ ճառագայթ կծնվեր...

— Դու էլ չես նայում,— շշուկով ասաց նա:— Ես տեսա, թե ինչպես հեռացար Մեծ Սրահից: Դու Երկիրն էիր նայում, ես գիտեմ...

Մթի մեջ ես լավ չէի զանազանում նրա դիմագծերը, բայց ձայնից զգում էի, որ նրա աչքերն այդ պահին շատ թախծոտ են: Իսկ առաջ նրա աչքերը միայն ջութակ նվագելիս էին այդպես տխրում:

— Գնանք այգի,— խնդրեցի ես:— Ինչ-որ բան սեղմում էր կոկորդս, և ես զգացի, որ ձայնս դողաց:— Ուզում եմ մի հին, շատ հին գաղտնիք պատմել քեզ: Գընանք...

Այգու անկյունում մի նստարան գտանք, որը ես երբեք չէի նկատել, և նստեցինք: Ես ոչ մի գաղտնիք չպատմեցի նրան: Խոսել չէի համարձակվում, իսկ նա լռում էր: Մի ժամ լռեցինք...

Երևի այդպես անխոս նստած էլ կմնայինք, եթե այգում չհայտնըվեին Օլին ու Լիլիթը: Դեռ հեռվից նկատելով նրանց, ես սկսեցի մի



*շուշտ, նույն ցավով տառապող մարդիկ գտնել ու նկարել: Բայց նա ամեն տարի շրջագայելով հայրենի երկրում, գտավ նկարելու իր թեման, հայտնաբերեց իր Հայաստանը: Հակոբյանի «Հայաստանը» արդեն լայնորեն ճանաչված ու սիրված է ո՛չ միայն մեր երկրում, այլև նրա սահմաններից հեռու: Նկարչի բնանկարները իրենց մեջ խտացնում են նրա կզա-*



Խաղողի այգին, 1974 թ.



Կինը խոհանոցում, 1959 թ.

*յուն սիրտն ու ներամփոփ, խորասույզ միտքը: Այդ գործերը տոգորված են անսահման սիրով, լուռ խանդաղատանքով դեպի հայրենի երկրի ամեն մի մասունքը: Հակոբյանը հակված է կզալ հողի ներքին շարժումները: Նա պատկերում է բնությունը, երբ այն մերկանում է գույներից, երբ ամառը սկսում է «պահվրտել» աշնան մեջ: Նա սիրում է վաղ գարունը, երբ բնությունը կարթոնք է ապրում, երբ հողի սավանը նետելով մերկանում են որթատունկերը, ապատորեն գալարվում օդում, ավետելով կյանքի թրթիռը...*

*Հակոբյանի աշխարհը հայկական արվեստի նոր հարստություններից է:*

*«Պիոներիի» ընթերցողները Հակոբ Հակոբյանի անվանը հաճախ են հանդիպում իրենց ամսագրի էջերում: Նա թե՛ ամսագրի համար կատարած իր նկարազարդումներով, թե՛ իբրև ամսագրի խմբագրական կոլեգիայի անդամ, ջանք չի խնայում, որպեսզի մանուկների ամսագիրը որքան կարելի է գեղեցիկ ներկայանա իր ընթերցողներին:*



Գարուն, 1971 թ.

հին մեղեդի սուլել, իսկ Ինան շառագունեց ու խոնարհեց գլուխը:

— Ահա թե որտեղ են փախուստականները,— խորամանկորեն ծիծաղեց Օլին, ապա ինձ դառնալով ցավակցաբար օրորեց գլուխը:— Ինչպե՞ս ես, դեռ վա՞տ ես կգում քեզ...

Ես նույնիսկ չփորձեցի նրան համոզել, որ իմ վատ կզալն ամեննին էլ Ինայի հետ առանձնանալու պատրվակ չէր...

Հետո օրեր անցան, շատ օրեր...

Հիմա արդեն Արեգակը տարբերվում է մնացած բոլոր աստղերից: Այդ սովորական աստղի շուրջը պտտվող ամենասովորական մոլորակ Երկիրը հիմա ինձ հարազատ է թվում:

Ինային խոստացել եմ Երկիր հասնելուց հետո ծաղիկներ հավաքել նրա համար՝ դաշտային բուրումնավետ ու բազմերանգ ծաղիկներ, ինչպես այն տղան երկրային ֆիլմում: Գուցե այն ժամանակ Երկրի ու նավի ծաղիկների տարբերությունն էլ կզգամ:

Աստղանավում հիմա բոլորն են ուրախ: Նույնիսկ ծերուկ Գանի Շեն ինձ համար նկարել է Ալ՛ Դեբարանը: Սակայն նկարի միայն անունն է այդպիսին: Իրականում այն աստղալից երկնքով գիշերային Երկրի տեսարան է, և քչախոս ծերուկը մի ժամ շարունակ ինձ համոզում էր, որ Ալ՛ Դեբարանն էլ կա այդ երկնքում...

Աստղագետը հիմա ավելի հավաքեց է լինում Մեծ Սրահում: Ինձ թվում է, թե ես մի քիչ հասկանում եմ նրան...



# ԵՐԿԻՆՔԸ ՆՈՐԻՑ ԿԱՊՈՒՅՏ ԷՐ



ՎԵՆԵՐԱ ԱՆԴՐԵԱՍՅԱՆ

Գյուղում գարունն ուրիշ է: Ցրտից վախեցող ծիծեռնակներն էլ են ուրիշ: Երկինքն էլ: Մարդիկ էլ են ուրիշ:

Շատերի պես քեռի Վահանը գարնանը ջահելանում է, նրա կոշտուկներով ձեռքերը վերցնում են բահըն ու... մի քանի օրից հետո այգին փորված-պատրաստ է: Հարևան Երեմն էլ իր այգու աշխատանքն է արագ ավարտում: Բայց Երեմի այգին այն բերքը չի տալիս, ինչ քեռի Վահանինը: «Էհ, հողս հող է՞, որ լավ բերք տա»,— տրտնջում է Երեմը: Քեռի Վահանը գլուխն օրորում է. «Երե՛մ, հողին վատ չեն ասի: Վատը դու ես, որ հողի լեզուն չգիտես, կարգին չես մշակում»: Երեմը նեղանում է քեռի Վահանից ու երկար խռով պահում, անցնելիս դառնալիս բարև չի տալիս...

Բայց այս տարվա գարունը քեռի Վահանին ուրախություն չբերեց, այլ... տառապանք:

Անցած աշնանը, փայտ կտրելիս, ծառի ճյուղը ջարդվեց և նա ծառից ընկավ ցած: Լավ է, թոռը հետն էր, վազեց, լուր տարավ գյուղ: Մարդիկ հասան, ուշքի բերեցին քեռի Վահանին ու մի կերպ հասցրին շրջանային հիվանդանոց: Պարզվեց, որ ոտքը փշրվել է, և հնարավոր չէ փրկել: Եվ այսպես, քեռի Վահանը զրկվեց ոտքից:

Եվ ահա նորից գարուն է: Նորից ծիծեռնակները ետ են եկել, անձրևից հետո երկինքը, կարծես, նոր լվացված լինի: Մարդիկ առաջվա պես պարզ են, բարի, ուրախ... Անճանաչելիորեն փոխվել է միայն քեռի Վահանը: Օրվա մեծ մասը նա անց է կացնում պառկած, աչքը փակ:

— Վահա՛ն ջան, բժիշկն ասաց, որ պետք է շատման գաս,— վախվորած արցունքները աչքերին՝ ասում է կինը:

— Բժիշկը շատ բան է ասում,— քրթմնջում է քեռի Վահանը,— բժիշկը բան էր հասկանում, թող ոտքս փրկեր... Ամեն մեկն իր այգին փորում է, մերը մնաց...

— Չի մնա, փեսաներդ խոստացել են, իրենցը շուտով կպրծնեն, կգան մերն էլ կփորեն, ինչի՞ ես նեղսրտում,— ցածրաձայն, որքան կարելի է մեղմ, ասաց կինը և վերմակի ծայրը բարձրացնելով ծածկեց ամուսնու բացված առողջ ոտքը:

— Հա՛... հողը կսպասի մինչև փեսաներդ իրենց այգին փորեն... կսպասի՛... ո՛նց չէ:

Նրա այդ խոսքի վրա ներս մտավ Երեմը՝ քեռի Վահանի այգու հարևանը:

— Հը՛, ո՞նց ես, Վահա՛ն,—նստելով հիվանդի մահճակալի կողքի աթոռին, հարցրեց նա:

— Ո՞նց կլինեմ, հարևա՛ն, ի՞նքդ ասա: Մի ոտնանի մարդը ո՞նց կլինի:

— Վահա՛ն ջան, մահից պրծար, քիչ բան չէ:

— Հա՛, հա՛, ո՞ւմ էի մի կտոր հաց տվել, առաջներս եկավ,— վրա բերեց կինը:

— Վահա՛ն ջան, տղամարդ ես, քեզ պի՛նդ պահիր: Ամեն ինչ լավ կլինի:

— Ի՞նչը լավ կլինի, Երե՛մ,— վահանի աչքերում արցունքներ շողացին,— նորից բահը վերցնելու եմ, գնամ այգին փորե՞մ:

— Դե՛, դե՛, երեխա չես, ի՞նչ ես կնկա նման փուխր սիրտ դառել,— Երեմը թաշկինակը հանելով՝ ճակատի քրտինքը սրբեց:— Ինձ ո՞ւմ տեղն ես դրել: Ես մեռել ե՞մ, որ դու, մի ոտքով, գնաս այգի փորես:

— Չէ՛, Երե՛մ... Շնորհակալ եմ, ընտանիքի տեր ես, դու քո այգին լավ մշակիր, հազիվ հասցնես քոնն անել:

— Առաջ քո այգին եմ փորելու, հետո՝ իմը,— ասաց Երեմը:—Ես հենց դրա համար էլ եկա, որ քեզ այդ ասեմ: Գնում եմ ու սկսեմ,— և պատասխանի չսպասելով՝ Երեմը գնաց:

— Նրա մինուճարը բախտավոր լինի...— հուզված ասաց Շուշանը,— ո՞վ կմտածեր, որ մեզ առաջին օգնության եկողը Երեմը կլինի, մտքովս չէր անցնում...

— Երեմի փորած-մշակած այգին ի՞նչ պիտի լինի,— քրթմնջաց քեռի Վահանը:

— Ամոթ է, ա՛յ մարդ, նա եկել փորում է քո այգին, դու էլ նրա փորածին անուն ես դնո՞ւմ:

Անցավ մեկ ամիս... Վահանն ու Երեմը նստել էին Վահանի այգու ծաղկած բալենու տակ և զրուցում էին:

— Երե՛մ,— նայելով իր այգուն, ասաց Վահանը,— դու, որ կարող էիր իմ այգին այսպես լավ մշակել, ինչո՞ւ քո այգին լավ չէիր մշակում:

— Քո այգին փորելիս աշխատում էի այնպես փորել, որ սրտովդ լինի, քո փորածից վատ չլինի: Դե, հետո էլ մեր այգին մտա... Մտածեցի. թշնամու այգի հո չի՞, իմն էլ կարգի բերի ու կարգին փորեցի:

Քեռի Վահանը ժպտաց.

— Ա՛յ մարդ, լավ է՝ ոտս կտրեցին, թե չէ՝ դու էլի էն անշնորհքն էիր մնալու:

— Ճիշտը որ ուզում ես իմանալ, Վահա՛ն, մարդուն օգնելը ինձ մարդ դարձրեց:

— Ինձ էլ քո օգնելը գիտենաս ի՞նչ տվեց...

Քեռի Վահանի համար գարունը նորից գարուն էր, օդում ճախրող ծիծեռնակները՝ նույն ծիծեռնակները, երկինքը՝ առաջվա պես կապույտ-կապույտ, մարդիկ՝ առաջվանը...

# ՔՈ ԻԴԵԱԼԸ ԿՅԱՆՔՈՒՄ

**Այս հարցով դիմեցինք Երևանի Կրուպսկայայի անվան դպրոցի մի խումբ աշակերտների: Տպագրելով նրանց պատասխանները, մեր ընթերցողներին հրավիրում ենք մասնակցելու այս զրույցին:**



ՎԱՀԱՆ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ.— Հիանալի է, երբ տղամարդը ուժեղ ու առնական է Ջեկ Լոնդոնի կերպարների նման և օժտված է Օ՛ Հենրիի հերոսների նուրբ զգացողությամբ: Բայց ինձ համար իդեալ է հրթիռաշինության հիմնադիրներից՝ խոշորագույն գիտնական Կորոլյովը: Նրա կյանքին ու գործունեությանը նվիրված կինոնկարը դիտելուց հետո, ավելի քան համոզվեցի, որ նա է իմ իդեալը: Կորոլյովը իր անձնական օրինակով շատերին էր մղում հերոսական արարքների ու սխրանքների: Անսահման աշխատասեր էր և ամբողջ էությամբ նվիրված էր իր սիրած գործին ու հայրենիքին: Կորոլյովի մեծագույն հըմայքներից մեկը համեստությունն էր: Հիշում եմ կարդացածս մի այսպիսի միջադեպ: Նրա կինը պատկերացում չի ունեցել, թե ինչպիսի խոշոր գիտնական է իր ամուսինը: Մի անգամ, երբ նրանք պետք է թռչեին ինչ-որ տեղ, կինը անհանգստանում է, որ կուշանան ինքնաթիռից: Կորոլյովը ստիպված ասում է, որ չենք ուշանա, ինքնաթիռը իր՝ Կորոլյովի անձնական ինքնաթիռն է և ցանկացած ժամանակ, ցանկացած տեղը կտանի իրենց:

Նա գիշեր ու ցերեկ աշխատում էր, կատարելագործում իր ստեղծած ինքնաթիռները: Նրա աշխատանքի արդյունքը եղավ նաև այն, որ պատերազմի ծանր տարիներին նախագծվեց, կառուցվեց ու կիրառվեց հզոր «Կատյուշան»՝ թշնամիների սարսափը: Դարձյալ Կորոլյովն էր, որ մի շարք գիտնականների հետ հրթիռ ստեղծեց, որի շնորհիվ տիեզերքի նվաճման սկիզբը դնողը եղավ մեր երկիրը: Ես այսպես եմ պատկերացնում մեր՝ 20-րդ դարի իսկական մեծ, իդեալական մարդուն:



ԱՐՏԱՇԵՍ ԷՄԻՆ.—Իմ պատկերացմամբ, յուրաքանչյուրի համար իդեալն այն կատարյալ մարդն է, որին նա իր ամբողջ էությամբ ձգտում է հասնել: Այդ ձգտումը լավ է արտահայտված բանաստեղծի հետևյալ տողերում.

— Օգնիր ինձ կյանքում ուղիղ ընթանալ,
Եթե քնած եմ՝ քնից արթնանալ,
Թե դուռը բաց է՝ իզուր չբանալ,
Եղածով երբեք չհանգստանալ
Եվ չասել, թե իմ արածն արեցի...

Թող տարօրինակ չթվա, եթե ասեմ, որ առայժմ ես չունեմ իմ իդեալը, չեմ տեսել:



ՏԱԹԵՎԻԿ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ.— Ես չեմ կարող համաձայնել նրանց հետ, ովքեր ասում են, թե իդեալի արժանի մարդ չեն տեսնում իրենց շուրջը: Մի՞թե հիացմունքի արժանի չէ մեր երիտասարդների խանդավառ գործունեությունը Հեռավոր Հյուսիսում, ցրտաշունչ տայգայում և երկրի այլ վայրերում, ուր նրանք, մեծ դժվարություններ հաղթահարելով, նոր ճանապարհներ, կամուրջներ են գցում դարավոր ամայի վայրերում, դարի կառույցը՝ Բայկալ-Ամուրյան մայրուղին են անց-

կացնում, որը երկրի սննդատու երակն է դառնալու:

Այո՛, իմ համոզմամբ իրականության մեջ իդեալներ շատ կան: Պարզապես պետք է նրանցով ոգևորվել կարողանալ:



ԿԱՐԵՆ ԹՈԽԱԹՅԱՆ.— Իմ կարծիքով, իդեալական մարդուն ավելի մոտ են տիեզերագնացները: «Սոյուզ—23» տիեզերանավի անձնակազմը հերոսության փայլուն օրինակ ցույց տվեց: Չնայած անսպասելի առաջացած դժվարությանը, անձնակազմը խուճապի չմատնվեց, հաջողությամբ կատարեց առաջադրանքը և դժվարին պայմաններում ապահովեց հաջող վայրէջքը:

Թեև արտաքուստ տիեզերագնացի մասնագիտությունը թվում է հեշտ ու ռոմանտիկայով լի, փառք ու համընդհանուր ճանաչում բերող գործ, բայց իրականում տարիների համառ ու քրտնաջան աշխատանք, հաստատակամություն ու մեծ դիմացկունություն է պահանջում: Եվ ապագայում, երբ տիեզերական թռիչքները առօրեական կդառնան, կստեղծվի իդեալական հասարակություն, և մեր այսօրվա իդեալը կկորցնի իր իմաստը, կստեղծվի իդեալի նոր հասկացություն:



ՆԵԼԼԻ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ.— Արդեն տասնմեկերորդ օրն էր, որ երիտասարդ բժշկուհին փոխադրվել էր ճակատ: Թույլ ու անփորձ այդ աղջիկը անընդհատ վիրահատում, կարում, բուժում էր ռումբերի պայթյունների ու մոմի թույլ լույսի տակ: Նա ոչինչ չէր զգում, միայն մերթընդմերթ լսում էր վիրավորների թույլ, նվաղած ձայնը: Այդ օրը տասնհինգերորդ վիրահատությունն անելուց հետո, ավարտեց աշխատանքը: Երջանիկ պատահականություն, վիրավորներ չկան, կարող է մի փոքր ննջել, ընդարմացած ձեռքերին ու մարմնին հնարավորություն տալ ուժ հավաքելու, մարդկանց կյանքի համար պայքարելու: Եվ հանկարծ ինչ-որ մեկը անվստահ հրում է դուռը.

— Ծանր վիրավոր են բերել, թույլ կտա՞ք ներս տանել:

Աղջիկը նայում է նրան. իսկ ինչո՞ւ թույլ կտաք, չէ՞ որ անհրաժեշտ է նրան օգնել: Սկսվում է վիրահատությունը: Գնալով ցավը սրվում է, և զինվորը ուզում է թողնել ամեն ինչ, փախչել հեռու-հեռու, մեռնել, միայն թե չզգալ այդ տանջող հրեշավոր ցավը: Բայց բժշկի հուսադրող, հավատով լի հայացքը ստիպում է նրան դիմանալ: Լարված ու անտանելի ծանր պայքար կյանքի ու մահվան, ցավատանջ հառաչ, ջղաձգված նյարդեր: Վիրահատությունն ավարտվում է: Զինվորը կապրի:

Այսպես էր աշխատում, պայքարում ու հերոսանում երիտասարդ բժշկուհին... Այդ ծանր, ահավոր օրերից տարիներ են անցել: Անցնող տարիները ճերմակ հետքեր են թողել մեր սիրելի Աստղիկ տատի մազերին: Նա այժմ ապրում է մեր բակում, և բոլորը, բոլորը սիրում ու հարգում են նրան:

Ամեն անգամ, երբ որևէ գործ եմ անում, միշտ մտածում եմ, թե ի՞նչ կասի նա, ի՞նչ խորհուրդ կտա: Եթե ինձ հարցնեն, թե ո՞րն է մարդու իմ իդեալը, առանց երկմտելու կասեմ՝ Աստղիկ տատիկը:

*Թևավոր խոսքեր*

## ՍՈԴՈՄ-ԳՈՄՈՐ

*Այսպես էին կոչվում Մերձավոր Արևելքի երկու քաղաքները, որոնք իրենց արատներով ու սանձարձակ բարքերով վշտացրել էին աստծուն: Աստված քարե կարկուտ և կրակե անձրև տեղաց նրանց գլխին և բնաջնջեց բոլոր բնակիչներին: Փրկվել թույլ տըրվեց միայն բարեպաշտ Ղովտին և նրա ընտանիքին: Բայց Ղովտի խիստ հետաքրքրասեր կինը խախտեց հրամանը՝ փախուստի ժամանակ շուռ չգալ և ետ չնայել, և դարձավ աղե սյուն:*

*Սոդոմ-Գոմոր ասելով, այժմ հասկանում ենք վայրենի քաոս, կատարյալ խառնաշփոթ: Բարեպաշտ Ղովտ ասում ենք այն լավ մարդկանց, որոնք ապրում են վատ շրջապատում:*

## ՍԻԶԻՖՅԱՆ ԱՇԽԱՏԱՆՔ

*Այսպես են կոչում ամեն մի անպտուղ, անվերջանալի աշխատանք:*

*Հույները պատմում են, թե Կորնթոսի արքա Սիզիֆը շատ խորամանկ էր: Անհնազանդ, գոռոզ արքան միշտ խաբում և ծաղրում էր աստվածներին: Նա*



ԴԻՈՆԵՐ-ի փոստից

# Մեր դրուժինայում

Մեր դրուժինան կրում է անվանի ջորավար Նվեր Սաֆարյանի անունը:

Մեր նշանաբանն է՝ «Սովորել, ապրել և աշխատել լենինաբար»: Դրուժինայի հուշալբոմի էջերը օրըօրին հարստանում են:

Մեր դպրոցում ավանդույթ է դարձել առարկայական տասնօրյակների անցկացումը: Արդեն տեղի են ունեցել ռուսաց լեզվին, մաթեմատիկային, ֆիզիկային, պատմությանը և ֆիզկուլտուրային նվիրված տասնօրյակներ: Իսկ կերպարվեստի տասնօրյակի օրերին դպրոցի դահլիճում բացվեց աշակերտների լավագույն աշխատանքների ցուցահանդես: Մեծ տպավորություն թողեցին հատկապես Նունե Նորոյանի գեղանկարները:

Գրականությանը նվիրված տասնօրյակի ընթացքում կազմակերպվեցին ցերեկույթներ նվիրված Գայի ծննդյան 90-ամյակին, Ավ. Իսահակյանին, Դերենիկ Դեմիրճյանին և Հովի. Թումանյանին:

Առարկայական տասնօրյակներին լույս տեսան «Պատանի գայական», «Պատանի քիմիկոս», «Պատանի մաթեմատիկոս», «Պատանի բնասեր», «Գերազանցիկ», «Գլոբուս», «Ձայն», «Պատանի ֆիզիկոս» և երգիծական «Մեղու» պատի թերթերը:

Տասնօրյակներին լավ մասնակցեցին 10-րդ դասարանցիներ Սվետլանան և Հրաչուհին, 9-րդ դասարանցիներ Անդրանիկը և Կարինեն, 7-րդ Ա դասարանցիներ Կարինեն, Գեղեցիկը, Մարինեն, Մելանիան և ուրիշներ:

Այս տարի լրանում է մեր դպրոցի աշակերտական արտադրական բրիգադի 12 տարին: Բրիգադը բազմիցս արժանացել է խրախուսանքների: Ի պատիվ Մեծ Հոկտեմբերի 60-ամյակի, մեր դասարանը պարտավորվել է դպրոցի բակում տնկել 60 ծառ: Բարեկամական կապեր ենք հաստատել և հանդիպումներ ենք ունենում Երևանի պետական համալսարանի «Ուստի կուգաս, կռունկ» ակումբի հետ, որի անդամները սփյուռքահայ ուսանողներ են:

*ՆԱՐԻՆԵ ԻՍԱՀԱԿՅԱՆ*
*Հոկտեմբերյանի Խանջյանի անվան սովխոզի միջն. դպրոցի դրուժինայի խորհրդի նախագահ*

---

*աստվածների իրեն հայտնի գաղտնիքները տալիս էր մարդկանց: Ձևը մահ է ուղարկում նրան, բայց նա շղթայում է Մահվանն էլ և մարդիկ դառնում են անմահ: Վերջապես, երբ հաղթում են Սիզիֆին, աստվածները խիստ պատիժ են սահմանում նրա համար: Նա դատապարտված էր մի հսկայական քար լեռը բարձրացնելու պատժին: Հազիվհազ քարը հասցնում էր լեռան գագաթը, երբ նորից այն պոկվում և գլորվում էր լեռան լանջն ի վար: Եվ գործը պետք էր սկսել նորից ու նորից...*

*Սիզիֆի պատիժը սոսկալի էր ո՛չ այնքան դժվարության, որքան անիմաստ աշխատանքի առումով: Հասկանալի է, որ հենց այս պատմությունից է ծագել դարեր շարունակ հիշվող սիզիֆյան անմիտ աշխատանքի պատկերացումը:*

*Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ*





# ԿՈՎԿԱՍՅԱՆ ՄՐՏԱՎԱՐԴ

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

Հավամրգազգիների ընտանիքին պատկանող չափազանց գեղեցիկ, մշտադալար թփեր են՝ մինչև 1—1,5 մետր բարձրությամբ, բավականին երկար, մասամբ գետնատարած ցողուններով: Կեղևը մուգ գորշավուն է, երիտասարդ ընձյուղները մազմզուկապատ են: Տերևները երկարավուն-ձվաձև են, ոլորված եզրերով, կաշվեկերպ, 4—12 սմ երկարությամբ, 2—4 սմ լայնությամբ, կլորավուն կամ սուր գագաթով:

Ծաղիկներն ունենում են մինչև 5 սմ տրամագիծ, հավաքված են խմբերով՝ 7—10-ական հատ: Սպիտակ են կամ բաց վարդագույն, հաճախ թույլ բուրմունքով: Ծաղկումը բավականին երկար է տևում՝ հունիսի վերջերից մինչև օգոստոսի սկիզբը: Ծաղկման շրջանում մրտավարդի բուսուտները սքանչելի բնական վարդանոց են հիշեցնում:

# ՀԻՆԳԵՐՈՐԴ ԱՆԳԱՄ ԱՆԸՆԴՄԵՋ

*Մի քանի տարի առաջ, երբ Չեխոսլովակիայի ֆուտբոլի ֆեդերացիան ֆուտբոլի մասին կինոնկար էր պատրաստում, ՍՍՀՄ-ից ընտրեց «Արարատ»-ին և ֆուտբոլի հանրապետական մարզադպրոցի թիմը:*

*Այս մարզադպրոցում (դիրեկտոր՝ ՀՍՍՀ վաստակավոր մարզիչ Էդ. Գրիգորյան) հմտացել ու մեծ ֆուտբոլի մայրուղի են ոտք դրել ՍՍՀՄ յոթ չեմպիոններ, գավաթակիրներ և հանրապետության վարպետ թիմերի կազմերը համալրած շատ մարզիկներ: Դպրոցի յուրաքանչյուր օրը հագեցած է մարզումներով, տեսական ու գործնական պարապմունքներով, հաճախակի կազմակերպվող մրցումներով: Դրանցից ամենակարևորը միութենական հանրապետությունների լուսավորության մինիստրությունների մարզադպրոցների ֆուտբոլի հավաքականների ավանդական մրցաշարն է: Այս տարի այն անցկացվեց հինգերորդ անգամ: Մրցաշարին մասնակցում էին միութենական տասնըմեկ հանրապետությունների, Մոսկվայի ու Լենինգրադի 15 հավաքականներ: Մրցապայքարի մասնակիցները բաժանվել էին երեք ենթախմբերի և, շրջանաձև մրցակարգով, վիճարկում էին եզրափակիչի ուղեգրերը:*

*Ինչպես և սպասվում էր, նախնական արգելքը հաջողությամբ հաղթահարեց մեր հանրապետության առաջին (մարզիչներ՝ Հ. Խաչմանուկյան, Ս. Բարսեղյան) և երկրորդ (մարզիչներ՝ Ռ. Մուրադյան, Ն. Ղազարյան) թիմերը: Առաջին հավաքականը 7:0 հաշվով հաղթեց լատվիացիներին, 5:0՝ լիտվացիներին, 7:0՝ մոլդավացիներին և ոչ-ոքի՝ 1:1 հաշվով ավարտեց հանդիպումը Վրաստանի թիմի հետ: Երկրորդ հավաքականը ևս աչքի ընկավ արդյունավետ խաղով. 7:0 հաշվով հաղթեց ադրբեջանցիներին, 8:0՝ թուրքմեններին, 2:1՝ լենինգրադցիներին և միայն էստոնացիների հետ կիսեց միավորները՝ 2:2: Մեր երկու թիմերի հետ միասին մրցանակային եռյակում հանդես գալու իրավունք ստացավ նաև Ուզբեկստանի հավաքականը: Վճռական փուլում ուզբեկ ֆուտբոլիստները բավարարվեցին երրորդ մրցանակով՝ 0:2 հաշվով պարտվելով Հայաստանի առաջին թիմից և 1:5 հաշվով՝ երկրորդից:*



*Այսպիսով, պարզ դարձավ, որ գավաթը հասցեն չի փոխելու, նորից Երևանում է մնալու, բայց թե մեր ո՞ր թիմին էր ժպտալու մարզական հաջողությունը, հայտնի դարձավ լարված, անվիճում, խիկապես «գավաթային» մրցապայքարից հետո: Մինչև վերջին րոպեները դժվար էր գուշակել հանդիպման ավարտը: Եվ ահա, խաղավարտից ընդամենը երկու րոպե առաջ, առաջին հավաքականի ֆուտբոլիստներին հաջողվեց խփել հաղթական գոլը (2:1) և նվաճել պատվավոր մրցանակը: Մարզադպրոցի սաները հինգերորդ անգամ էին տիրանում գավաթին:*

*Մրցաշարում սահմանվել էին մի քանի մրցանակներ, որոնցից երկուսը հանձնվեց «Հայաստան—2» թիմի խաղացողներին. Բ. Մելիքյանը լավագույն կիսապաշտպան ճանաչվեց, իսկ Ռ. Վարդանյանը լավագույն ռմբարկու (7 գոլ):*

*Ա. ԲԱԲԱՅԱՆ*



Երրորդական դարաշրջանի հնագույն թփատեսակ է:

Մեր հանրապետությունում հանդիպում է Փամբակի և Ծաղկունյաց լեռների հյուսիսային լանջերում, ծովի մակերևույթից 1900—2000 մ բարձրության վրա, անտառի վերին սահմանի մոտ՝ մասամբ ընդգրկելով նաև ալպյան մարգագետինները:

Մրտավարդի առավել նշանակալի բուսուտը գտնվում է Փամբակի լեռներում՝ Համզաչիման գյուղից վեր՝ Մայմեխ լեռան լանջերին: Համեմատաբար փոքր բուսուտները ցրված են Չքնաղի, Չիբուխլուի, Աղստևի, ինչպես նաև Ծաղկունյաց լեռնաշղթաներում:

Ծաղկունյաց լեռնաշղթան կովկասյան մրտավարդի տարածման ամենահարավային սահմանն է:

Դարերի ընթացքում այս արժեքավոր բույսի գրաված տարածությունը կրճատվել է, և ներկայումս այն կանգնած է լիակատար անհետացման եզրին: Դրա պատճառը հիմնականում կլիմայի խիստ փոփոխությունն է և մարդու անխնամ վերաբերմունքը:

Մրտավարդի բուսուտներում հանդիպում են սովորական արոսենին, հապալասենին, մրտենին, բռնչին, բարձր լեռնային թխկին, Լիտվինովի կեչին, հաճարենին: Խոտածածկոցում հանդիպում են դանձիլը, դորոնիկումը, աղվեսագիի մի քանի տեսակներ:

Մրտավարդը, որպես վարդաբույս օգտագործվում է կանաչապատման համար, հատկապես հյուսիսային, խոնավ մարզերում: Դժբախտաբար, այն հնարավոր չէ աճեցնել մեր պուրակներում ու զբոսայգիներում: Մրտավարդը վատ է դիմանում օդի չորությանը, խոնավության պակասին, շոգին, քաղաքին բնորոշ ծխին, փոշուն և այլն, և, որ ամենակարևորն է, ոչնչանում է կրային հողերում:

Որպես հազվագյուտ և անհետացող տեսակ, մրտավարդը պահպանության խիստ կարիք ունի: Ճիշտ է, ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի որոշմամբ մրտավարդի բուսուտները արգելավայր են հայտարարված, այնուամենայնիվ, դեռևս այս թփատեսակի գոյությանը լուրջ վտանգ է սպառնում, քանի որ չեն պահպանվում արգելավայրային ռեժիմի տարրական պայմանները:

Այն վայրերում, որտեղ հանդիպում են կովկասյան մրտավարդի բուսուտներ, պիոներ-դպրոցականները պետք է հոգ տանեն, որպեսզի պահպանվեն այդ խիստ հազվագյուտ և անհետացման եզրին գտնվող բույսերը:


Լույս է տեսնում 1923 թվականից

№ 10 հոկտեմբեր 1977 թ.



# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


Մեր կյանքի հիմնական օրենքը . . . . . 2
Կոմունիստական երգերի ընտանիքը — Հ. ՔԵՐՈԲՅԱՆ . . 3
Ջրույց Արգնու դպրոցականների հետ — Վ. ԱՆԱՆՅԱՆ 4
Հայերը և միջնադարյան Կազանը — Վ. ՈՍԿԱՆՅԱՆ . 7
Գիշերային երկինք — Հ. ՀԱԿՈԲՅԱՆ . . . . 8
Մեր դպրանոցը — Թ. ԳԵՎՈՐԳՅԱՆ . . . . 8
Հրազդան — Ա. ՇԱՀԱԶԻԶՅԱՆ . . . . . 11
Հայրենի գյուղում — Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆ . . . . 11
Արդեն աշուն է — Հ. ՎԱՐԴՈՒՄՅԱՆ . . . . 11
Մայրիկիս — Վ. ՀՈՎՍԵՓՅԱՆ . . . . . 11
Այդ ամենաստվերական մոլորակ երկիրը — Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ . . . . . . . . 13
Հակոբ Հակոբյան — Շ. ԽԱՉԱՏՐՅԱՆ . . . . 16
Երկինքը նորից կապույտ էր — Վ. ԱՆԴՐԵԱՍՅԱՆ . 18
Քո իդեալը կյանքում . . . . . . 19
Թևավոր խոսքեր . . . . . . . 20
Մեր գրադարանում — Ն. ԻՍԱՀԱԿՅԱՆ . . . . 21
Կովկասյան մրտավարդ — Լ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ . . 22
Հինգերորդ անգամ ահրեգմեջ — Ա. ԲԱԲԱՅԱՆ . . 23





«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15:

Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:

ՎՖ 04420: Պատվեր 1800: Տպաքանակ՝ 51806: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 21/X 1977 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

